ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
№ 9

ԵՐԵՎԱՆ 1969

ԼԵՎՈՆ ԽԱՉԻԿՅԱՆ

# ՍՅՈՒՆԱՑ ՕՐԲԵԼՅԱՆՆԵՐԻ ԲՈՒՐԹԵԼՅԱՆ ՃՅՈՒՂԸ

XIV—XV դարերում պատմական Հայաստանի Սյունյաց նահանգի մի շարք գավառների աշխարհիկ ու հոգևոր իշխանությունը կենտրոնացված էր Օրբելյան ֆեոդալական գերդաստանի Բուրթելյան կոչվող ճյուղի պայազատների ձեռքում[1]։

Շուրջ երկու հարյուրամյակ, սկզբից որպես Սյունյաց մի շարք գավառների հզոր տիրակալներ, իսկ այնուհետև որպես նույն աշխարհի տարբեր մասերում որոշ կալվածքներ ունեցող սակավազոր ավատատերեր կամ հոգևոր առաջնորդներ՝ XIV—XV դարերի սկզբնաղբյուրներում հիշատակվում են Օրբելյանների Բուրթելյան ճյուղից սերված տասնյակ ներկայացուցիչներ։ Առ այսօր, սակայն, այդ տվյալների բաղդատական ուսումնասիրությամբ դեռևս չի ստեղծված ֆեոդալական այդ գերդաստանի ճյուղագրությունը՝ ժամանակագրական վստահելի հիմքով։

Առաջին փորձն այս ուղղությամբ կատարել է հայագիտության մեծ երախտավոր Ղ. Ալիշանը[2]։ Երկրորդ փորձը, շատ ավելի հարուստ նյութերի հիման վրա, ըստ իր հավաստման, կատարելու էր Գ. Հովսեփյանը՝ Օրբելյանների մասին գրելիք իր ուսումնասիրության մեջ[3]։ Նրա անտիպ գործերի շարքում հիշատակված է նաև Օրբելյան իշխանության մասին անավարտ մի երկ, որի մեջ, թերևս, տրված է նաև Բուրթելյան գերդաստանի տոհմագրությունը. ցավոք այդ ձեռագիր աշխատությունը անմատչելի է մեզ։

Ալիշանի «Սիսականում» տպագրված տոհմածառը, մեզ հետաքրքրող իր մասով, այսպիսի տեսք ունի (տե՛ս հաջորդ էջ)։

XIV—XV դարերի հայերեն ձեռագրաց հիշատակարանների և վիմական արձանագրությունների վերջին տարիներս կատարված հրատարակությունների մեջ ամփոփված են բազմաթիվ տվյալներ ու ակնարկներ, որոնք հնարավորություն են ընձեռում վերանայելու Ղ. Ալիշանի խիստ թերի տոհմածառը և կազմելու Բուրթելյան գերդաստանի շատ ավելի ամբողջական ու ստուգապատում ժամանակագրական պատմությունը։ Այդ աշխատանքը, անշուշտ, ինքնանպա-

1 Ժամանակակից հիշատակարաններում Օրբելյանների այդ ճյուղը կոչվում է «Տուն Բուր-թելի» (ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 560), «Տուն Բիւրթելեանց» (ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, I, էջ 194, II, էջ 194), «Պուռթելեանց զարմ» (ԺԵ, I, 258), «Բուրթէլեանց ազգ» (ԺԵ, III, էջ 147) և այլն։

2 Ղ. Ալիշան, Սիսական, Վենետիկ, 1893, ներդիր 92—93-րդ էջերի միջև։

3 Գարեգին արքեպիսկոպոս Հովսեփյան, Խաղբակյանք և Պռոշյանք Հայոց պատմության մեջ, մասն առաջին, Երևան, 1928, էջ IV—V։ Ս. Սիմոնյան, Գարեգին կաթողիկոսի բանասիրական վաստակը, «Հանդ», 1952, էջ 253։

տակ չէ. հիշյալ դարերի հայ քաղաքական ու մշակութային կյանքի շատ իրողություններ առնչվում են Սյունյաց աշխարհի հետ, և շատ անցուդարձերի ժամանակագրությունը աղերսված է սերտորեն Սյունյաց այս կամ այն իշխանի ու եպիսկոպոսի աթոռակալության տարիներին։ Ըստ այդմ՝ Բուրթելյան գերդաստանի տոհմածառն ու ժամանակագրական պատմությունը, անտարակույս, իր դույզն նպաստն է բերելու վերոհիշյալ ժամանակաշրջանի Հայոց պատմության ամբողջական ուսումնասիրությանը։



Ահա այս ակնկալությամբ, մանրակրկիտ քննություն կատարելուց հետո, ստորև ի մի ենք բերում մեզ հայտնի բոլոր կարևոր վկայությունները Բուրթելյան գերդաստանի պայազատների մասին։ Քիչ թե շատ նշանավոր անձանց կյանքի դրվագներին նվիրել ենք առանձին ամփոփ հատվածներ, Բուրթելյանների պատմությունը, բնականաբար, սկսելով այդ գերդաստանի հիմնադրի կյանքի համառոտ տարեգրությամբ։

## ԲՈՒՐԹԵԼ ՕՐԲԵԼՅԱՆ

Բուրթելը՝ Տարսայիճ Օրբելյանի թոռն է, Էլիկումի որդին, անվանի պատմիչ և Սյունյաց մետրոպոլիտ Ստեփանոս Օրբելյանի եղբորորդին։

Սյունիքում ու նրա սահմաններից դուրս Բուրթելը, որպես Սյունյաց մեծ իշխան, հիշատակվում է 1306—1344 թվականներին։ Առաջին անգամ նրա անունը գտնում ենք 1306 թ. Սարգիս գրչի Եղեգիսում շարադրած հիշատակարանում (ԺԴ, 42)[4], իսկ վերջին անգամ՝ Նորատուսի 1344 թ. վիմական մի արձանագրության մեջ։

Ժամանակակիցները Բուրթելին մեծարում են շքայլ տիտղոսներով. «մեծ ամիր» (ԺԴ, 100), «մեծ կոմս և կողմնակալ» (ԺԴ, 117)», մեծ քրիստոսասալար

[4] Այստեղ և այսուհետև ամենուրեք մեր կազմած «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» (Երևան, 1950 թ.) ժողովածուն վկայակոչում ենք «ԺԴ» համառոտագրությամբ՝ շարադրանքի մեջ և ո՛չ տողատակում։ Նույն ձևով՝ XV դարի հիշատակարանների եռյակ հատորները՝ ԺԵ, I, ԺԵ, II և ԺԵ, III համառոտագրությամբ։

իշխան» (ԺԴ, 167), «մեծ իշխանաց իշխան տանս Սիւնեաց», «յաղթող սպարապետ» (ԺԴ, 182), «Հայոց Մեծաց թագազարմ ժառանգ՝ տէր տանն Սիսական՝ մեծիմաստ պարոն» (ԺԴ, 292), «մեծ սպարապետ Հայոց և Վրաց՝ թագազարմ իշխան» (ԺԴ, 297), «հիպատոս և սպարապետ Հայոց» (ԺԴ, 328) և այլն:

Շռայլորեն մատնարված այս բնույթի տիտղոսները, իհարկե, հնարավորություն չեն ընձեռում ճշգրիտ որոշելու այս կամ այն գործչի քաղաքական ու տնտեսական կշիռն իր ապրած ժամանակաշրջանում: Սրանք, այնուամենայնիվ, ցուցանիշ են այն իրողության, որ մոնղոլական իշխանության վերջին տասնամյակներում Սյունյաց իշխանաց իշխան ամիր Բուրթելը ազդեցիկ դիրք էր գրավում: Մի հիշատակարանում ասված է, որ նա «առաջի աշխարհակալացն մեծարեալ և բազում ընծաիւք պատուեալ» էր, և որ 1307 թվականին իր զորքերով (Ջեսար Օրբելյանի հետ միասին) մասնակցել է Խարբանդա խանի դեպի Գիլանի կողմերը ձեռնարկած մի արշավանքին, որից «խաղաղութեամբ» տուն է դարձել՝ բայց կորցրել է իր զորքի մի մասը («բայց զորացն պակաս մնացին»[5]):

Իր իշխանության տարիներին Բուրթելը մասնակցել է նաև այլ պատերազմների, վաստակելով «քաջի և միշտ յաղթողի» համբավ[6]:

Ժամանակակից աղբյուրներում տվյալներ կան նաև Բուրթելի զորահրամանատարի՝ Շահունեցի Վահրամ իշխանի որդի Ամատա զորավարի մասին (մեռել է 1349-ից առաջ), որ տեր էր կարգված Վայոց ձորում գտնվող Երերան (Հերհեր), Վանք և Քալասակ կոչվող բնակավայրերի (ԺԴ, 376): Տեղեկություն ունենք նաև Բուրթելի նայիպ (հավատարմատար) կոչված ոմն Ալինախ իշխանի մասին, որը հիշատակված է միջնադարյան ուշագրավ մի զրույցի մեջ[7]:

---

5 «Բազմավէպ», 1947, № 9—10, էջ 216—217:

6 Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 81:

7 Տե՛ս Ն. Մառ, Ժողովածոյք առակաց Վարդանայ, մասն Բ, Ս. Պետերբուրգ, 1894, էջ 343—344: Չնչին տարբերություններ ունի տպագրվածից նույն զրույցի Մատենադարանի № 8076 ձեռագրում ընդօրինակված փոփոխակը, որ բերում ենք ստորև. «Պարոն Բուրթելն յաւուր միում գնայր զօրօքն ի ճանապարհ, և երէց մի աշխարհի պատահեալ ի ճանապարհին: Եւ իջեալ ի ձիոյն՝ հանդերձ զօրօքն համբուրեցին զաջ քահանային: Եւ նայիպն Ալինախ անուն տրտնջաց պարոնին: Եւ նա զաղտ պատուէր ետ, զի մի կնքեսցեն և թաղեսցեն զընտանիս նորա: Մեռաւ որդին և ոչ թաղեցին զնա: Եկն առ Բուրթելն և նա ասէ. «Ես և դու գնամք, թաղեմք զնա»: Եւ նա ասէ. «Այդ անհնար է»: Եւ նա ասէ. «Բայց դու այն օրն էր տրտնջեցեր՝ յորժամ զքահանայն պատուեցի»: Վասն այսորիկ պատուել զքահանայն պարտ է՝ միջնորդ հաշտութեան առ աստուած» (ձեռ. № 8076, էջ 72ա):

Բուրթել Օրբելյանի մասին կան նաև այլ զրույցներ, որոնք ուշագրավ են որպես պատմական նշանավոր անձնավորությունների շուրջ հյուսված զվարճախոս պատմություններ և վկայում են Սյունյաց այդ իշխանի ժողովրդականության մասին: Ավելորդ չենք համարում ներկայացնել նաև դրանք՝ քաղելով Մաշտոցյան Մատենադարանի № 2226 ձեռագրից:

—«Վարդապետ մին զովեցին մօտ պարոն Բուրթելն, թէ յոյժ համբերող է: Ասէ «Գնացէք, բերէք, որ փորձեմ»: Երբ ի դուռն եբեկ, տեսաւ զնա, ասէ. «Երթ ի բաց, յիմար և չէթ»: Եւ նա լռութեամբ ի բաց գնաց: Դարձեալ ասէ. «Վարդապետ, եկ, վարդապետ, եկ»: Եւ դարձեալ եկն առ իշխանն: Ասէ. «Վարդապետ, զայդ ուստի գիտէիր համբերել»: Ասէ. «Պարոն, զայդ ի շանէն եմ ուսել, զնա ի դրոց շատ բան գիտեմ»: Եւ պարոնն յոյժ սիրեաց զնա»:

— «ԶՏիրատուր վարդապետն ի պաշտօն տարան և այն օրն հաց մոռացան տալ ուտելոյ: Երեկոյին ժամուն տարան ի տուն: Ասէ պարոնն (Բուրթել) «վարդապետ, քանի՞ տարոյ ես»: Ասէ. «Խ. (40) տարոյ, պակաս մի օր»: Ասէ. «Մէկն է՞ր է պակաս»: Ասէ. «Օրս այս, որ քաղցած պահեցեր, ժամանակի կարգ ոչ է» (ձեռ. № 2226, էջ 59ա—59բ, հմմտ. նաև Ղ. Ալիշան, Սիսական, էջ 127):

Մեծարվել է Բուրթել իշխանը նաև որպես բարեպաշտ մի անձնավորություն, որ «էր խստակրօն ցայգաջան և գիշերավաստակ ծնրադրող, առաւել քան զմիանձունս քարանձաւաց»[8]: Եղեգիսի Նորավանքում կառուցել է Բուրթելաշեն կոչվող հոյակապ եկեղեցին՝ հայ միջնադարյան ճարտարապետության գոհարներից մեկը, գրել է տվել ու շքեղ զարդարել ձեռագրեր[9]:

Գլաձորյան համալսարանի բաբունապետ Եսայի Նչեցին, 1323 թվականին գրած մի հիշատակարանում, մեծարում է Բուրթելին ու նրա որդիներին և հայտնում, որ նրանց առատաբաշխությամբ՝ «յոլով շինութիւն և խաղաղութիւն գործեցաւ մեզ և ամենայն եկեղեցեաց Քրիստոսի», և որ՝ «ի հասարակախնամ բարեաց սոցա ընդ ամենեսեան և մեք՝ մեր աշակերտաւք՝ բազում և անթիւ զութս գտաք ի սոցանէ» (ԺԴ, 182—183):

1306—1315 թթ. Եղեգիսում շարադրված հիշատակարաններում Բուրթելի կողքին, որպես տեղի տեր, հիշատակվում է նրա եղբայր Բուղտա (կամ Պուղտա) իշխանը, որը, սակայն, երիտասարդական հասակում՝ «յետ յոլով քաջ մրցմանց տիգախոցեալ զանթառամն ընկալաւ պսակ», այսինքն՝ սպանվեց (1318 թվականին):

Բուրթելի մահվան ստույգ թվականը չգիտենք. վերջին անգամ, որպես ապրող անձնավորություն, հիշված է 1344 թ., մեռած էր արդեն 1348-ին: Այդ թվականին շարադրված մի հիշատակարանում ասված է. «Փոխեցելոյն առ Քրիստոս յոյսն ամենեցուն պարոն Բիրթելին» (ԺԴ, 369):

Բուրթելի կինն է Վախախ իշխանուհին, որ հավանաբար Ծարի Դոփյան կոչվող գերդաստանից է սերում: Բուրթել ու Վախախ ամուսիններից ծնված զավակներն են՝ Բեշքենը, Իվանեն ու Սամեղը, որոնք միասին հիշատակված են 1344 թվականին Նորատուսում գտնվող վիմական մի արձանագրության մեջ[10]:

Սամեղը (իմա՝ Սամուել)՝ եղբայրներից կրտսերն է, մեռած լինելով պատանի հասակում՝ չի հիշատակված այլ աղբյուրներում, իսկ Բեշքենի և Իվանեի մասին կան բավարար տեղեկություններ:

## ԲԵՇՔԵՆ ՈՐԴԻ ԲՈՒՐԹԵԼԻ

Անտարակույս՝ Բուրթելի ավագ որդին է. հիշատակագիրները, ամենուրեք, նախ սրա անունն են տալիս և նոր միայն Իվանեի: Առաջին անգամ հիշատակվում է Արփա գյուղի եկեղեցու արձանագրության մեջ (1322 թ.) և ապա՝ Եսայի Նչեցու կողմից՝ 1323 թվականին (տե՛ս վերը):

1337 թվականին Բեշքենը գտնվում էր իլղանության կենտրոններում՝ Թավրիզում և Սուլթանիայում՝ զինվորական ծառայության մեջ: Այս քաղաքներում Բեշքենի պատվերով նշանավոր գրիչ Ավագն ընդօրինակեց փառահեղ մի ավետարան, որ նա վաղամեռիկ իր տիկնոջ՝ Փաշայի հիշատակին նվիրեց Տաթևի վանքին (ԺԴ, 232): Ձեռագրի հիշատակարանում Ավագը Բեշքենին կոչում է «մեր տէրն ըստ մարմնոյ» և մեծարում նրան՝ «Հայոց Մեծաց թագավորի ժառանգ, տէր տանն Սիսակայ, մեծիմաստ պարոնաց պարոն» տիտ-

8 Մաշտոցյան Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 81—82:

9 Տե՛ս «Բազմավէպ», 1947, № 9—10, էջ 216—217:

10 Ղ. Ալիշան, Սիսական, էջ 47:

զոաններով: Այստեղ հիշատակվում է նաև Բեշքենի մանկահասակ որդի Էլիկումը:

Ուշագրավ են Բեշքենի և Իվանեի մասին Սարգիս մետրոպոլիտի շարադրած տողերը՝ 1337 թ. հիշատակարանում. այնտեղ ասված է, որ նրանք ամեն բանով նման են իրենց բարեպաշտ հորը՝ Բուրթել իշխանին՝ «խոհականութեամբ և մատակարարութեամբքն զաշխարհս և զզօրս, նաև յառաջադէմ յարքունիս և մեծափառ, զի մեծարանս արար տէր երեսաց սոցա»[11]:

Վերջին անգամ Բեշքենը հիշատակված է 1349 թվականին՝ որպես «քաջ զաւրավար Հայոց, աստուածասէր և բարէպաշտ իշխանաց իշխան» (ԺԴ, 375): Ե՞րբ է կնքել իր մահկանացուն, չգիտենք:

Բեշքենի որդի Էլիկումի մասին տվյալները խիստ աղքատիկ են: 1337 թվականին Ավագ գրիչը հիշատակում է նրան, որպես «նորաբոյս ոսկեբողբոջ աստուածատուր հարազատ, ծիրանածին և բարենշան զաւակ» (ԺԴ, 292), որը որբ էր մնացել մորից և դաստիարակվում էր, հավանաբար, իր պապ Բուրթելի և տատ Վախախի խնամածությամբ:

Երբ Օրբելյանների սպարապետ Ամատա Շահունեցին վախճանվեց երիտասարդ հասակում, թողնելով միայն մի դուստր՝ Նաթիլ անունով, Բուրթելն ու Վախախը Շահունեցի իշխանների տիրույթների ժառանգ այդ դեռատի օրիորդին ամուսնացրին Բուրթելի որդի Էլիկումի հետ, որ 1349 թ. հիշատակարանում (ուր խոսվում է այդ ամուսնության մասին) կոչված է Կուկա («զորդի Բեշքենայ՝ զԿուկայն»): Գիտենք արդեն, որ Բեշքենն ուներ միայն մեկ որդի, ուստի դժվար չէ հետևցնել, որ Կուկա անունը Էլիկում անվան փաղաքշական ձևն է:

Արդ, այս ամուսնությամբ Բեշքենի որդի Էլիկումը ժառանգեց Ամատա Շահունեցու (Նաթիլի հանգուցյալ հոր) կալվածքները և իր պապի կողմից կարգվեց «տէր հայրենեաց Վահրամայ որդոյ Շահունեցոյն՝ Երերան և Վանացն և Քալատակին և այլ հայրենեացն ամենայնի» (ԺԴ, 376): Այս դեպքերը կատարվել են 1344—1348 թվականներից առաջ, երբ դեռ ողջ էին Բուրթելն ու Վախախը:

Ինչքան են ապրել ու տիրել իրենց կալվածքներին Էլիկումը (Կուկան) և Նաթիլը, չգիտենք: Նրանց մասին որևէ այլ տվյալ չեն հաղորդում ժամանակակից աղբյուրները: Ըստ այդմ կարծում ենք, որ շատ կարճատև է եղել նրանց կյանքը, և հեռացել են աշխարհից՝ անհիշատակ:

## ԻՎԱՆԵ ՈՐԴԻ ԲՈՒՐԹԵԼԻ

Բուրթելի երկրորդ որդու՝ Իվանեի անունը սկզբնաղբյուրներում տարածված ենք գտնում տարբեր ձևերով՝ Իւան (ԺԴ, 303), Իւանէ (բազմիցս), Իվանե («Սիսական», 96), Իվանիկ (ԺԵ, II, 317, «Սիսական», 47), Ինանիկ (ԺԵ, I, 87, 656, «Սիսական» 96), Նանիկ (ԺԴ, 567): Բարեբախտաբար, գրեթե ամենուրեք, նա հիշատակված է կամ իր հոր ու ավագ եղբոր հետ միասին, կամ իր որդիների ու թոռների անունով, ուստի դյուրությամբ որոշվում է, որ տարբեր ձևերով գրի առնված այդ անվան տակ ժամանակակիցները նկատի են ունեցել նույն անձնավորությանը՝ Բուրթել իշխանի Իվանե որդուն:

11 Երուսաղեմ, ձեռ. № 1033, էջ 62, հմմտ. ԺԴ, 297:

XIV դարի առաջին տասնամյակներին, սակայն, Սյունիքում ապրել է նաև մի այլ Իվանե իշխան՝ տեր Որոտան գավառի։ Եվ ահա մինչև Իվանե Բուրթելյանի կենսագրականին անցնելը անհրաժեշտ է տարբերակել համանուն այս իշխաններին[12]։

Նախ, անդրադառնանք Որոտանի տեր Իվանեին։

Այս անձնավորության և նրա գերդաստանի մասին ամենաուշագրավ տվյալները գրանցված են 1337 թվականին ընդօրինակված մի Սաղմոսարանի հիշատակարանում, որ ստացել է հենց այս Իվանեի եղբայր՝ Սյունյաց մետրոպոլիտ Սարգիս եպիսկոպոսը՝ «յիշատակ անձինն իւր և ծնողաց իւրոց՝ հօր իւրոյ Հասանայ, որ էր յազգէ և յազնէ մեծափառ իշխանաց տանս Սիւնեաց, և մօր իւրոյ տիկին Վախախին, և եղբօրն իւրում՝ պայազատի և քաջազօրի զամբի Իվանէի, որ էր ամիրա և պետ երկրին Որոտան, և եղբօրորդւոյ իւրոյ՝ կոբավամիտ սրբազան նորընծա քահանայի Յովաննիսի... նայ և եղբարց սորին հարազատաց և հեկայազօրս հաստարազուկ մանկտուոյն՝ Հասանայ և Զաքարէի, և ամենայն արեան մերձաւորաց»[13]։

Այս արժեքավոր տվյալները հավաստվում և լրացվում են Իվանե իշխանի դուստր և Օրբելյանների ազարապետ Ամատա Շահունցու տիկին՝ Թուղթանի իշխանուհու հիշատակարանով, որ շարադրված է 1349 թվականին։ Այնտեղ ասված է. «Արդ, ես՝ անարժան Թուխթանի, դուստր Իւանէ Որոտան իշխեցողի, բոյր քաջ քարտուղարի և երջանիկ րաբունապետի Յովաննէս վարդապետի, հարսն մեծ Շահունցեանց, կենակից հզաւր և մեծ իշխանին Ամատին շինեցի զՆերբան ժամատունս... յիշատակ ինձ, և առն իմում Ամատին... և զաւակին իմ Նաթիլին, և հաւր իմ Իւանէ, և մաւր իմ Տիկնանց-Տիկնայ, հարազատ եղբարց իմոց Հասանայ և Զաքարէի, և ամենայն արեան մերձաւորաց» (ԺԴ, 375)։

Որոտան գավառի հին ավատատերերի այս գերդաստանի մասին ավելի ազգատիկ տվյալներ կան նաև ձեռագրաց այլ հիշատակարանների մեջ, գրանցված մեծանուն գիտնական ու մանկավարժ Հովհան Որոտնեցու կապակցությամբ, որը ըստ վերոհիշյալ աղբյուրների և բազմաթիվ այլ վկայությունների, որդին էր «քաջի Իվանէի՝ Որոտան իշխեցողի» (տե՛ս օրինակ, ԺԴ, 497, 520)։ Թովմա Մեծոփեցին ևս հայտնում է, որ Հովհան Որոտնեցին ծննդյամբ էր «ի գաւառէն Որոտնոյ, ի գեղջէն Վաղանդնայ՝ որդի մեծի իշխանին Իվանի, որ էր ի զարմէ առաջին իշխանացն Սիւնեաց, յորմէ Վասակն էր»[14]։

Այս գերդաստանի առհմագրությունը ըստ վերոհիշյալ տվյալների՝ հնագույն դարերից է գալիս, նրանք սերված են համարվում Սյունիքի հին ու բնիկ իշխաններից։ Սակայն, ցավոք, հանվանե հիշատակվում են միայն Հասանը (կինն է՝ Վախախ), նրա որդիները՝ Սարգիս եպիսկոպոսն ու Իվանե իշխանը (կինն է՝ Տիկնանց-Տիկին), և թոռները (Իվանեի զավակները)՝ Հովհան Որոտ-

---

12 Այդ աշխատանքը առ այսօր չի կատարված, և ինչպես այլ բանասերներ, այնպես էլ մենք («ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի անձնանունների ցանկի մեջ և այլուր), շփոթել և որպես մի անձնավորություն ենք ներկայացրել Իվանե անունը կրող այս երկու իշխաններին։ Դրանց տարանջատման գործում մեզ օգնել է Աս. Մնացականյանը, որին հայտնում ենք շնորհակալություն։

13 Երուսաղեմ, ձեռ. № 1033, էջ 61—62 (Տե՛ս նաև «Սիոն», 1868, № 8, էջ 192, 1938, № 9, էջ 275—278)։

14 Թ. Մեծոփեցի. Պատմութիւն Լանկ-Թամուրայ, 1860, Փարիզ, էջ 14։

նեցին, Հասանը, Զաքարեն և Թուղթանեն, և այս վերջինի դուստրը՝ Նաթիլ իշխանուհին։

Հասան իշխանը, հայրը լինելով Սարգիս մետրապոլիտի (որ արդեն 1326 թվականին հիշված է որպես Վաղադնի վանահայր) ապրած պետք է լինի XIII դարի երկրորդ կիսամյակում։ Այդ ժամանակաշրջանից հայտնի են Հասան անունը կրող շուրջ երկու տասնյակ գործիչներ[15], որոնցից մեկը՝ Դլենյանց կոչվող Հասանը՝ ըստ երևույթին նույնացվելու է սրա հետ։

Ստ. Օրբելյան պատմիչը հայտնում է, որ Դլեն իշխանի սերնդից Հասան իշխանը, իր երկու եղբայրների հետ միասին, «եկեղեցի և բազում միաբանութիւն» է ունեցել Տաթևում, սակայն XIII դարի վերջին՝ «յաւերման է գաւառին իւրեանց և ի դառն և վերջին աղքատութենէ», ստիպված է եղել Ստ. Օրբելյանին վաճառելու իրենց գերդաստանին պատկանող մի սուրբ մասունք, ստանալով 500 դահեկան և «այլ բազում պարգևս ձիոց և եզանց և հանդերձից»[16]։

Ահա Դլենյան այս Հասանի որդին է եղել, հավանաբար, մեզ հետաքրքրող Իվանե Որոտնեցի իշխանը։ Իվանեի եղբայր Սարգիս մետրոպոլիտի 1337 թ. հիշատակարանում ասված է, որ նա «էր ամիրա և պետ երկրին Որոտան», ուստի մեռած էր արդեն այդ թվականից տարիներ առաջ, մինչդեռ Բուրթելի որդի Իվանե իշխանը առաջին անգամ հիշատակված է Արփա գյուղի եկեղեցու մի արձանագրության մեջ՝ 1322 թվականին որպես «նորաբողբոջ» երիտասարդ։ Հետագա տարիների (1323, 1333, 1334, 1337, 1338, 1348, 1349) բազմաթիվ հիշատակարաններում, Սյունյաց իշխանների թվարկման ժամանակ, տրվում է նաև այս Իվանեի անունը՝ նրա ավագ եղբայր Բեշքենից հետո։ Վերջին անգամ, որպես կենդանի անձնավորություն, Իվանեն հիշատակված է 1377 թվականին, երբ, մի ժամանակագրի վկայությամբ, «իշխանութիւնս Հայոց էր նուազեալ, և միայն մնացեալ Իվանի, որ կոչի Իւանիկ, որդի մեծին Բուրթելին, ի մէջ այլազգեաց՝ բազում հարկապահանջութեամբ»[17]։

Իվանե Բուրթելյանը ունեցել է 4 արու զավակ. դրանք են՝ Ստեփանոս-Սուլթանշահ, Սմբատ, Բուրթել և Գորգոն։ Արդ, առանձին առանձին ծանոթանանք Իվանեի այս որդիներին։

## ՍՈՒԼԹԱՆՇԱՀ-ՍՏԵՓԱՆՈՍ ՈՐԴԻ ԻՎԱՆԵ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Մաշտոցյան Մատենադարանի № 9450 ավետարանի վերջում կան այդ ձեռագրի հետագա օտարումների մասին մի քանի հիշատակագրություններ։ Մեզ համար հատուկ հետաքրքրություն են ներկայացնում 374ա և 373բ էջերի գրանցումները։ Դրանցից առաջինում ոմն «Գրիգոր նուաստ և անարժան քահանայ» ասում է, որ իր հալալ արդյունքով 1366 թվականին գնել է այդ ավետարանը՝ «յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և եղբարց»։ 373բ էջի հիշատակագրության առաջին տողը («Կամաւ կարող հզաւրին աստուծոյ») գրված է վերոհիշյալ հիշատակարանի ձեռագրով, իսկ շարունակությունը գրել է ոմն տեր Ստեփանոս-Սուլթանշահ այսպես. «Ես տէր Ստեփաննոս մականուն Սուլթանշահ, թոռն Բուրթելին որդի Նանկի[ն ե]ղբաւրն [Բ]շքենի պարոնի՝ ի Քրիստոս է հանգուցել։ Մեք վկայ եմք այս սուրբ Աւետարանիս Վահրամայ և իւր եղ-

15 Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Գ, էջ 57—59։

16 Ստ. Օրբելյան, Պատմություն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 485—487։

17 «Սիսական», էջ 96։

բայր ///, իւրեանց հալալ արդեամբ գնեցին զայս սուրբ Աւետարանս, աստուած շնորհաւոր առնէ, ամէն, ամէն»։

Ստացող Վահրամի և նրա եղբոր եղծված անունները գրված են ջնջված այլ բառերի վրա, իսկ ջնջվել են, հավանաբար, վերոհիշյալ Գրիգոր քահանայի ու նրա եղբոր անունները[18]։ Ըստ այդմ Ստեփանոս-Սուլթանշահի հիշատակագրությունը գրանցված պետք է լինի նույն թվականին, ինչ Գրիգոր քահանայինը, այսինքն 1366-ին։ Այս հիշատակագրության համաձայն Բուրթելի որդի, Բեշքենի եղբայր Նանիկ-Իվանեն ունեցել է Ստեփանոս-Սուլթանշահ անունով մի որդի, որ եղել է եպիսկոպոս (սրա մասին ավելի հանգամանալից խոսք կլինի Սյունյաց եպիսկոպոսներին նվիրված բաժնում)։

## ՍՄԲԱՏ ԵՎ ԲՈՒՐԹԵԼ՝ ՈՐԴԻՔ ԻՎԱՆԵ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Սմբատի մասին առաջին տեղեկությունը գտնում ենք Հովհան Որոտնեցու աշակերտ Հակոբ գրչի 1386 թվականին շարադրած բովանդակալից հիշատակարանում։ Խոսելով 1—2 տարի առաջ տեղի ունեցած քաղաքական անցուդարձերի մասին, նա գրում է, որ «զմեղքն իմ ծովացեալ եհան զգունդս անօրինաց ի վերայ քրիստոնէից, մանաւանդ ի վերայ տանն Բուրդելի։ Որ եկին և առին զբերդն Որոտան, և հայրենազուրկ արարին զպարոն Սմբատն, որդի Նանիկին» (ԺԴ, 560)։ Այստեղ հիշատակված «անօրենները», հավանաբար, Ոսկյա-Հորդայի ղան Թոխթամիշի զորքերն են, որ 1385-ին մեծ ավերածություններ գործեցին նաև Սյունիքում։ 1400—1403 թթ. Սմբատ և Բուրթել եղբայրները Տաթևում շարադրված մի հիշատակարանում կոչվում են տեղի իշխաններ (ԺԴ, 632, ԺԵ, I, 4, 35)։ Հավանաբար 1403 (կամ հաջորդ) թվականին Լանկթամուրի Թոռ Միրզա-Օմարը, որ կուսակալ էր կարգված Իրանի և Անդրկովկասի վրա, Սմբատ և Բուրթել իշխաններին «դարձոյց բռնութեամբ ի յանհաւատութիւն» (այսինքն՝ դարձրեց մահմեդական) և, իրենց ընտանիքներով, ուղարկեց Սամարղանդ։ Շատ չի տևում, սակայն, սամարղանդյան գերությունը, շուտով նրանք վերադառնում են Սյունիք[19] և կրկին դառնում քրիստոնեական հավատքի։ 1406 թվականից նրանք նորից սկսում են հիշատակվել Տաթևում գրված ձեռագրերում (ԺԵ, I, 74)։

Բուրթել իշխանն իր երկու մանկահասակ որդիների հետ, ինչպես և Սմբատի մի որդին (բոլորն էլ՝ անանուն) զոհ են գնում 1407 թ. մեծ հունձ կատարած համաճարակին. «Այսօր եղբայր Սմբատին պարոն Բուրթէլ՝ հանդերձ որդւովք իւրովք հանգեաւ ի Քրիստոս, և որդի Սմբատին, և այլքս անթուելիք են»,— գրել է Թ. Մեծոփեցին իր ընդարձակ հիշատակարաններից մեկում (ԺԵ, I, 80, հմմտ. նաև ԺԵ, I, 75)։

1407 թվականին Սմբատ իշխանն իր հեծելազորով մասնակցում է Ջելաիրյան Ահմադ Ղանի և Կարա-Յուսուֆի դաշնակցած ուժերի մղած կռիվներին՝ Թամուրյանների դեմ։ Հիշատակարանը, որի մեջ տվյալներ են եղել այդ մասին, պահպանվել է խիստ քայքայված վիճակում, ուստի շատ բան մութն է մնում։ Պարզ է, սակայն, որ Սմբատի զորագունդը մեծ կորուստներ է ունեցել (ԺԵ, I, 82)։

---

18 Անունների այս փոփոխության կատարողը նպատակ է ունեցել ներմուծել այդ հիշատակագրության մեջ ձեռագրի նախկին ստացողների՝ Վասիլի և Վահրամի անունները։

19 Թովմա Մեծոփեցի. Փարիզ, 1860, էջ 68։

Երբ Կարա-Յուսուֆը զբաղված էր Աղ-Կոյունլուների դեմ պատերազմելով, Սուլթան-Ահմադը իշխանությունը գրավելու փորձ է կատարում, միայնակ վայելելու համար Կարա-Կոյունլուների գործակցությամբ Թամուրյանների դեմ տարած հաղթանակը: Սմբատ Բուրթելյան իշխանը, անսալով իր ու հեռատես խորհրդատուներին, նույնպես հայտնվում է Ահմադի կուսակիցների շարքում և նրանից պարգև ստանում Անգեղակոթ գյուղը[20]: 1410 թվականի օգոստոսին Ահմադը պարտություն է կրում և սպանվում Կարա-Յուսուֆի կողմից: Ջելաիրյաններին աջակցողները պատժվում են: Յուսուֆը բռնագրավում է Սմբատ իշխանի կալվածքները. «Էառ զԹրոան ի Սմբատայ իշխանէ»,—հայտնում է Թ. Մեծոփեցին[21]: Եվ Սմբատ իշխանը ստիպված է լինում պատսպարվել Վրաստանում: 1412 թվականին, իր Բեշքեն որդու հետ միասին, նա հիշատակվում է որպես Գորիի մոտ գտնվող Աֆլիսցիխե գյուղաքաղաքի իշխան: Այստեղ շարադրված մի հիշատակարանում Մելքիսեդեկ գրիչը հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակել է «իշխանութեան տեղոյս (Աֆլիսցիխէի) պարոն Սմբատի և որդւոյ նորին պարոն Բէշքէնի, որ ի յաստմանէ չարին վտարեցան ի հայրենեաց իւրեանց» (ԺԵ, I, 133):

Սմբատ իշխանը կնքում է իր մահկանացուն օտարության մեջ՝ 1412—1414 թթ. միջոցին: 1415 թ. Տաթևում գրված մի ձեռագրում, որպես տեղի իշխաններ, հիշատակվում են սրա որդիները՝ Բեշքենն ու Շահը: Ուստի հավանաբար հայրը՝ Սմբատ իշխանը, մեռել էր այդ թվականից առաջ (ԺԵ, I, 653): Մատթեոս Մոնոզոնը 1417 թ. Գանձասարում շարադրած հիշատակարանում Սմբատի մասին գրում է. «Քանզի այն, որ կայր մնացեալ շառաւիղ տանն Բիւրթելեանց՝ ...որոյ անուն Սըմբատ կոչիւր, և անդ (ի Վրաստան) ի յօտարութեանն վախճանեցաւ» (ԺԵ, I, 194):

Սմբատ Բուրթելյանը մեծ հավանականությամբ ամուսնացած է եղել վրացուհի մի իշխանուհու հետ, այդ ամուսնությունից ծնված որդիներից տեղեկություն ունենք 4-ի մասին. մեկը 1407 թ. մահապարժամին զոհ գնացած պատանին է, որի անունն իսկ չի պահպանվել, մյուսներն են՝ Բեշքենը, Իվանե-Ստեփանոսը և Շահը: Բայց մինչև սրանց անդրադառնալը անհրաժեշտ է ի մի բերել Իվանեի մյուս որդու՝ Գորգուն իշխանի գործունեությունը լուսաբանող հատուկենտ վկայությունները:

## ԳՈՐԳՈՒՆ ՈՐԴԻ ԻՎԱՆԵ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Գորգունի անունը, իր հոր անվան պես, տառադարձված ենք գտնում տարբեր ձևերով՝ Գորգուն, Գորգոն, Գուգուն, Թերևս նաև Գօրգունէ:

Սամուել Անեցու «Ժամանակագրության» շարունակողներից մեկը, ՊԼԵ (1386) թվականի տակ, պատմում է հետևյալը. «Թուրքն էառ զբերդն Որոտան, և մեծ վարդապետն Կախիկ գնաց փախստական ի Ծարայ, և պարոն Գօրգունէն զարգամահ եղև»[22]: Այս ուշագրավ տեղեկությունը Հր. Աճառյանի կողմից հասկացվել է այն իմաստով, որ «Սրա (իմա՝ Գորգուն իշխանի) ձեռքից վշտամահ

20 Նույն տեղում, էջ 72—73:

21 Նույն տեղում, էջ 34:

22 Սամուէլի Քահանայի Անեցւոյ, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 170:

եղավ Հովհան Որոտնեցին»[23]։ 1386 թվականի այս վկայությունը միակն է, ուր Իվանե Բուրթելյանի Գորգոն որդին հիշատակված է որպես կենդանի, կամ քիչ առաջ մեռած անձնավորություն։

XV դարի հիշատակարանների ու Թ. Մեծոփեցու «Պատմության» մեջ մի երկու անգամ դարձյալ հանդիպում ենք Բուրթելյան այս իշխանի անվանը, բայց արդեն՝ նրա Տարսայիճ որդու կապակցությամբ։ Մեծոփեցին, օրինակ, հայտնում է, որ Սմբատ և Բուրթել իշխանների հետ մեկտեղ Թամուրյան տիրակալ Միրզա-Օմարը բռնի հավատափոխ է արել նաև վերոհիշյալ Տարսայիճին («Զտէրն Եղեգեաց Տարսայիճ անուն՝ զորդի Գորգոնին ուրացուցին»[24]), իսկ Գրիգոր Ախալցխացի գրիչը, 1419 թ. շարադրած իր հիշատակարանում, Բուրթելյանների այս ճյուղի հաջորդականության մասին այսպիսի ցուցում է տալիս. «...պարոն Տարսայիճին, որդւոյ Գուգոնին, որդոյ Իւանիկին, որդոյ Բուրթէլին» (ԺԵ, I. 656)։ Այս վկայություններից պարզվում է, որ պարոն Գորգոնը իշխել է Եղեգնաձորում։

Այժմ դառնանք Սմբատ իշխանից սերված պայազատներին։

## ԲԵՇՔԵՆ ՈՐԴԻ ԻՎԱՆԵ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Սրա անվանն առաջին անգամ հանդիպում ենք 1406 թ. Տաթևում շարադրված մի հիշատակարանում, ուր ասված է, որ ձեռագրի ընդօրինակությունը կատարվել է «յիշխանութեան պարոն Սմբատին և որդոց նորին Բէշքէնին և Իւանէին» (ԺԵ, I, 58)։

1410 թվականից հետո, իր հոր հետ միասին, Բեշքենն էլ հայրենազուրկ է լինում, վտարվում Սյունիքից ու պատսպարվում Վրաստանում։ 1412 թվականին, ինչպես գիտենք արդեն, նա ևս հիշվում է որպես Ախալցխեի գյուղաքաղաքի տեր («իշխանութեան տեղւոյս պարոն Սմբատի և որդւոյ նորին պարոն Բէշքէնի») (ԺԵ, I, 133)։

Սմբատը, տեսանք, որ վախճանվում է «ի յօտարութեանն» (Վրաստանում), բայց նրա որդիներից երկուսը, Մատթեոս Մոնոզոնի ստուգապատում տվյալներով, «եկին ի հայրենիս իւրեանց, և ոչ են տեարք իշխանութեանն իւրեանց, այլ ընդ ձեռամբ անօրինաց» (ԺԵ, I, 194)։ Երկու այդ որդիներից մեկը, անտարակույս, Բեշքենն է, մյուսը՝ Շահը. այդ մասին է վկայում Հովհաննես գրիչը, որ 1415 թվականին Տաթևում շարադրած իր հիշատակարանում գրում է. «Իշխանութեան տեղւոյս մեծատոհմի Բէշքէնի՝ հարազատով Շահիւ» (ԺԵ, I, 653)։ Մի քանի տարի անց՝ 1422 թվականին, նույն Տաթևում, նա հիշատակվում է որպես այդ վայրի իշխան՝ միայնակ, առանց իր եղբայր Շահի ընկերակցության (ԺԵ, I, 292)։

Բեշքենի որդի Ռուստամը, Կարա-Կոյունլու Սքանդար փադիշահի մերձավոր զինակիցներից մեկը լինելով, պետական բարձր պաշտոններ է գրավել (այդ մասին՝ քիչ հետո)։ Սքանդարի իշխանության տարիներին (1421—1437) Բեշքենին հաջողվում է, անշուշտ իր Ռուստամ որդու աջակցությամբ, վերա-

[23] Հայոց անձնանունների բառարան, հտ. Ա, էջ 493։ Բացառված չէ, որ տարաձև գրանցված այս (Գորգոն) անձնանվան ուղղական հոլովաձևերից մեկն էլ եղել է Գորգոնէ (հմմ. Իւանէ, Կարիկէ, Ստեփանէ և այլն)։ Այդ դեպքում պետք է ենթադրել, որ ժամանակագիրն ակնարկել է պարոն Գորգոնի վշտամահ լինելու մասին՝ Թուրքերի կողմից իր կալվածքների գրավման կապակցությամբ։

[24] Թ. Մեծոփեցի, էջ 68։

տանալ Բուրթելյան տան կալվածքների մի մասը։ 1428 թվականին, օրինակ, նրան էր պատկանում նաև Անգեղակոթ գյուղը (ԺԵ, I, 382), իսկ 1429-ի մի պաշտոնական գրության մեջ Բեշքենը հիշատակվում է իր մի քանի վասալների հետ միասին[25]։

Դրությունը, սակայն, փոխվում է 1434—1435 թվականից հետո, երբ Լանկ-Թեմուրի Շահռուխ որդին, երրորդ անգամ լինելով, արշավեց Կարա-Կոյունլու Իսքանդարի վրա և պարտության մատնեց նրան։ Թեմուրյանները ներխուժում են նաև Սյունիքի սահմանները և ավերածություններ գործում. Բեշքենը, իր Ռուստամ որդու հետ միասին, դարձյալ ստիպված է լինում թողնել իր հայրենական կալվածքները և, հազարավոր հպատակների գլուխ անցած, գաղթել վրաց տիրապետության տակ գտնվող Հյուսիսային Հայաստանի շրջանները։

Վրաց Ալեքսանդր թագավորը, որ Բեշքենի փեսան էր, Լոռու բերդն իր շրջակայքով հանձնում է իր աներոջը։ Սյունիքից Լոռի կատարված մեծ գաղթի մասին ուշագրավ տողեր է գրանցել Թովմա Մեծոփեցին. «...Առեալ (Բեշքենն) զամենայն կողմն Սիւնեաց և զամենայն գաւառս շրջակայ մերձ ի Սիւնիս, աւելի քան զՋՌ. (6000) քրիստոնեայ տունս, ազատեալ ի Շահռուխէն, հասոյց ի կողմն Վրաց։ Եւ թագաւորն առ երեսս պատուեալ զնա, տայ նմա զդղեակն Լոռու»[26]։

Որպես Լոռու տիրակալ Բեշքենը և Ռուստամը հիշատակվում են նաև 1437 թ. Սանահնի վանքում Շմավոն վարդապետի շարադրած հիշատակարանում. այնտեղ կարդում ենք. «Իշխանութեան տեղոյս իշխանաց իշխանին պարոն Բէշքենին՝ շառաւիղին Օրբելեանց, և որդոյ իւրոյ պարոն Ըռըստամին» (ԺԵ, I, 468)։

Մի տարի անց՝ 1438 թվականին, Վրաց Ալեքսանդր թագավորը, երկյուղ կրելով, որ «Հայք առ նա ժողովեցին և աւերումն լինի կողման Վրաց», թունավորել է տալիս իր աներոջը՝ Բեշքեն իշխանին[27]։

Բեշքենի զավակներից տեղեկություն ունենք երեքի մասին. Ռուստամից բացի ունեցել է 1438-ին հազիվ 10 տարին բոլորած մանկահասակ մի որդի[28], որի անունը չի հաղորդված և որի հետագա կյանքի մասին վկայություններ չկան։ Դուստրը, որի անունը նույնպես չգիտենք, ինչպես տեսանք, եղել է Վրաց Ալեքսանդր թագավորի (1412—1443) կինը։

---

25 Ստորև բերում ենք այդ գրությունը. «Ցանուն աստուծոյ ես՝ Բեշկէն, որդի մեծի իշխանին Սմպա[տա]յ, տեսի զԱւետարանս, որ բազում ժամանակ ի մեր երկիրս էր ու գնել էր Տանձիկանց Աւագն։ Երեկ Թումայ երեց Սիւնայվանից, թէ այս մեր եկեղեցոյն է, Սիւնավանից թալան է տարել, ու երդումն կերաւ։ Ես Բեշքէն, որդի պարոն Սմպատին, տուի մեզ արեշատութեան ու մեր նախնեացն յիշատակ ի Սիւնեց վանիցն, որ Սիւնիվանք ասեն։

Ես Յովհաննէս վարդա[պ]ետ, որ զգիրս գրեցի վկա եմ։ Ես Յովանէս եկեղեցպան Վաղադնոյ [վա]նացն վկայ եմ։ Ես Գիլանձի որդի Լեշին վկա [եմ], ես Փաշարաթ՝ որդի էլէկ[ս]անին Լորեցի վկայ եմ, ես Էլտուր՝ որդի Փալիկին վկայ եմ, ես Ափղազ՝ որդի Սեթիկայ, որ մեր հայրն ու հաւրեղբայրն Աւագն գնել էր, մեք էլ յետ տւինք, մեք ենք Դասայքարու տէր՝ տւինք ի յեկեղեցին Սիւնէվանից, ոչ ում խաւսք ու գրոյց չկայ, աստուած շնհաւոր առնէ։

Ամիս արեգ, Թուական հայոց ՊՀԸ. (1429), Դասայքարն պատժաւր լինի» (ԺԵ, I, 392)։

26 Թ. Մեծոփեցի, էջ 117—119։ Տպագիրն այստեղ աղավաղված է, սրբագրում ենք մի շարք ձեռագրերի բաղդատությամբ։

27 Նույն տեղում, էջ 118։

28 Նույն տեղում, էջ 119։

## ԻՎԱՆԵ-ՍՏԵՓԱՆՈՍ ՈՐԴԻ ՍՄԲԱՏ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Սմբատ իշխանի այս որդին մեզ արդեն ծանոթ է 1406 թ. Տաթևում շարադրված հիշատակարաններից, ուր նա հիշված է հոր և եղբոր հետ միասին, որպես տեղի իշխաններից մեկը («յիշխանութեան պարոն Սմբատի և որդոց նորին Բեշքենին և Իւանէին»)։ Այդ ժամանակ նա դեռևս աշխարհական էր ու արդեն ընտանիք կազմած։ (Իվանեի որդի պարոն Սմբատի տարիներ հետո թողած մի հիշատակագրությունից հայտնի է դառնում նաև նրա կնոջ՝ Մարգարիտ-Խաթունի անունը)։

Ե՞րբ է Իվանեն եկեղեցականի սքեմ հագել ու դարձել Ստեփանոս Սյունյաց եպիսկոպոս, առայժմ չգիտենք, գուցե 1410-ին (այս մասին տե՛ս Սյունյաց եպիսկոպոսների ժամանակագրությանը նվիրված բաժնում)։ 1419 թ. Հերմոնի վանքում շարադրված արժեքավոր մի հիշատակարանի մեջ նրա մասին կարդում ենք. «Եւ ի հայրապետութեան այսմ նահանգի տէր Ստեփանոսի՝ մականուն Իւանէի, որդի պարոն Սմբատայ և եղբայր պարոն Բէշքէնի» (ԺԵ, I, 656)։

Իվանե-Ստեփանոս պարոնտերը վերջին անգամ հիշատակված է 1421 թվականին՝ Տաթևի վանքում («Ի յառաջնորդութիւն տէր Ստեփաննոսի ի զարմէն Պուռթելեանց»). մեռել է հենց նույն թվականին (ԺԵ, I, 256) Վրաստանում, ուր գնացել էր իր մորը տեսության։ Թովմա գրիչը նրա վախճանի մասին գրում է. «Յառաջնորդութեան տանս Սիսականայ տէր Ստեփաննոսի՝ որդւոյ պարոն Սմբատին, որ և յայսմ ամի գնացեալ ի տունն Վրաց առ մայրն իւր՝ փոխեցաւ ի Քրիստոս» (ԺԵ, I, 292)։

Իվանե-Ստեփանոս պարոնտերի որդուն ու սերնդին քիչ հետո անդրադառնալու խոստումով, երկու խոսք ասենք Սմբատ իշխանի մյուս որդու՝ Շահի մասին։

## ՇԱՀ ՈՐԴԻ ՍՄԲԱՏ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Շահը, իր ավագ եղբայր Բեշքենի հետ միասին, հոր մահվանից հետո վերադարձել է Սյունիք։ 1415 թվականին Տաթևում գրված մի հիշատակարանից պարզվում է, որ երկու այս եղբայրները այդ ժամանակ գտնվում էին Սյունիքում («Իշխանութեան տեղւոյս մեծատոհմի Բէշքէնի, հարազատով՝ Շահիւ»)։ Մի քանի տարի անց Բեշքենը մենակ է հիշվում որպես իշխան Տաթևի, հետագայում նաև այլ կալվածքների։ Պետք է ենթադրել, ուրեմն, որ Շահը երկար չի մնացել Սյունիքում, այլ վերադարձել է Վրաստան, ուր ապրում էր դեռևս իր մայրը (հավանաբար ազգությամբ վրացուհի)։

Բեշքեն իշխանի եղեռնական մահվան պատմությունը շարադրելիս Թովմա Մեծոփեցին տխրությամբ արձանագրում է, որ այդ ժամանակ (1438 թ.) նրա Շահ անունով եղբայրը ողջ էր և հանգիստ ապրում էր Վրաստանում՝ «վարժեալ և սնեալ առ որովայնամոլ ազգին Վրաց։ Եւ անարի գտեալ և ոչ ի խնդիր ելեալ հայրենի գաւառին»[29]։

---

29 Թ. Մեծոփեցի, էջ 119։

## ՏԱՐՍԱՅԻՃ ՈՐԴԻ ԳՈՐԳՈՒՆ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Տարսայիճն իշխում էր Եղեգիսում. հիշատակված է այն իշխանների շարքում որոնք բռնությամբ մահմեդական դարձվեցին Լանկ-Թամուրի թոռ Միրզա-Օմարի կողմից, 1403 թվականին[30]: Թամուրյանների պարտությունից հետո Տարսայիճը նույնպես դառնում է քրիստոնեական հավատքի. «Մարդիկ,—գրում է Թ. Մեծոփեցին,—որք յաւուրս շաղաթային ի հաւատոյ ուրացեալք էին, եկին ի հաւատս՝ Բուրթէլն Որոտնայ, Տարսայիճ՝ Եղեգեաց»[31]: 1415 թվականին Տարսայիճի մասին ուշագրավ տվյալներ է գրանցել Գրիգոր Ախալցխացի գրիչը, հայտնելով, որ հենց նույն տարում նա զրկվեց հայրենական իր կալվածքներից ու թշվառ վիճակի մեջ է գտնվում: «Գրեցաւ գիրքս, որ կոչի Հարցմունք,—կարդում ենք վերոհիշյալ գրչի հիշատակարանում,—...ի հայրապետութեան սուրբ ուխտիս և գաւառիս պարոն Տարսայիճին, որդոյ Գուգունին, որդոյ Ինանիկին, որդոյ Բուրթէլին: Զի յայսմ ամի յոյժ ի նեղութիւն, ի տառապանք և յաղքատութիւն անկաւ, զի նա, որ բոլոր գաւառիս իշխէր, այժմ ոչ միոյ ագարակի կամ գեղջ ոչ կարէ իշխել, զի խլեալ և յափշտակեալ էին ի նմանէ զամենայն գեղ և զագարակ, զվանք և զանապատ ի նմանէ. և նա փախեալ և թագուցեալ էր ի ծերպս վիմաց և ի մայրիս, մինչև այց արասցէ նմա տէր աստուած և յառաջին փառսն և իշխանութիւնն դարձուսցէ զնայ» (ԺԵ, I, 656):

Գրչի այս բաղձանքը չի իրականացել. ճիշտ է, Տարսայիճի որդիներից Սըմբատը դարավերջի մի հիշատակարանում (տե՛ս ստորև) մեծարված է «իշխանաց իշխան» տիտղոսով, բայց չունենք որևէ վկայություն հավաստելու, որ Տարսայիճին կամ նրա ժառանգներին հաջողվել է հետագայում վերստանալ իրենց կալվածքները Եղեգիսում:

«Իշխանաց իշխան» այդ Սմբատը հիշատակված է իր որդի՝ Վայոց-ձորի արքեպիսկոպոս Եղիշեի կապակցությամբ՝ Եղեգիս քաղաքում ընդօրինակված մի ավետարանի հիշատակարանում, որի մեզ հետաքրքրող մասը բերում ենք ստորև. «Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), ի կաթողիկոսութեան տեառն Սարգսի ...և վերադիտող այսմ նահանգի (իմա՝ Վայոց ձորի) պարոնտէր Եղիշա արքեպիսկոպոսի, որդոյ իշխանաց իշխանի պարոն Սմպ[ատ]ա, որդոյ մեծին Տա[ր]սաիճի»[32]:

Այսքանով սպառվում են Տարսայիճի հաջորդների մասին մեզ հայտնի աղքատիկ տվյալները:

## ՌՈՒՍՏԱՄ ՈՐԴԻ ԲԵՇՔԵՆ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Ռուստամը մեզ արդեն մասամբ ծանոթ է Բեշքենի կյանքի տարեգրությանը նվիրված հատվածից: XV դարի Հայոց պատմության մեջ կարևոր դեր կատարած մի գործիչ է: Սքանդար Կարա-Կոյունլուն ներքնապես ուժեղ պետություն ստեղծելու իր ծրագրերն իրագործելու ճանապարհին ինչ-որ չափով հենվում էր նաև հայ իշխող վերնախավի վրա. իրեն կոչում էր «Հայաստանի թագավոր» (Շահ-ի արմեն), պետական բարձր պաշտոններ էր շնորհում հայ ֆեո-

30 Թ. Մեծոփեցի. էջ 68:

31 Նույն տեղում, էջ 73:

32 Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայ ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հտ. Ա, 1914, էջ 585:

ղալական տներից սերված որոշ գործիչների, իր զորքի մեջ հավաքագրում էր նաև հայ ռազմիկների և այլն։ Ռուստամ Բուրթելյանը, անտարակույս իր արտակարգ ընդունակությունների շնորհիվ, դարձել էր Սքանդարի մերձավոր գործակիցներից մեկը և առաջ քաշվել պետական բարձր պաշտոնների։ 1431 թվականին, լինելով հավանաբար Երևանի նահանգի կառավարիչ, Ռուստամը Էջմիածնի վանքին վաճառքի անվան տակ վակֆ արեց 7 խոշոր գյուղեր, որով և տնտեսական հող ստեղծեց հայ եկեղեցու հոգևոր կենտրոնը Կիլիկիայից մայր Հայրենիք՝ Էջմիածին տեղափոխելու համար։ Նվիրաբերված այդ գյուղերի պարսկերեն ընդարձակ կալվածագրում շատ ուշագրավ են Ռուստամին տրված տիտղոսները, որոնք ինքնին ցուցանիշ են այն բարձր դիրքի, որ գրավել էր Բուրթելյան այդ իշխանազունը Կարա-Կոյունլուների վարչական ատյաններում։ Այնտեղ ասված է. «Վեհանձնյա էմիր և իշխան, մեծափառ, ազնվաշուք, բարձրաստիճան, բարձրագույն, վստահելի ծառա և ամենաազնիվ վեզիր, նորին կայսերական մեծություն սուլթանի մտերիմ, ամենազոր, արքայական պետության սիրելի, մեծագույն արքունի խորհրդական, արքաներից ամենից իմաստունի վստահելի, որի անձը վեր է ամեն տեսակ նկարագրությունից ու գովասանքից, հավիտենականության տեր աստծո ողորմածությամբ իշխանության և կրոնի քաջահաղթ էմիր Ռուստամ, որդի էմիր Բեշքենի, որդի էմիր Սմբատի»[33]։

Պետք չէ տարակուսել, որ Սքանդարի իշխանության տարիներին Ռուստամի բարձր հեղինակությամբ Սյունյաց Օրբելյանները և, մասնավորապես, Ռուստամի հայր Բեշքենը, վերատացել էին իրենց կալվածքների մի մասը և բարեկեցիկ վիճակ ստեղծել իրենց համար։ Դրությունը փոխվեց արմատապես Սքանդարի պարտությունից ու սպանությունից հետո։ Գիտենք արդեն, որ 1437 թվականին Ռուստամը, պետական գործերից հեռացած ու պատիվներից զրկված, ապաստանել էր Լոռիում։ Հետագայում սակայն նա կրկին վերադարձել է Սյունիք։ 1451 թվականից պահպանվել է մի պարսկերեն կալվածագիր, որի համաձայն նույն Ռուստամը Տաթևի վանքին է վաճառում իրեն պատկանող Սվարանց, Տաշու, Աղանց ու Տանձատափ գյուղերը։ Բայց այս փաստաթղթում նա հիշատակվում է առանց բազմահարկ տիտղոսների, սոսկ որպես՝ «հայ ամիրզադա Ռուստամ, որդի ամիր Բեշքենի, որդի Սմբատի»[34]։

Ամիր Ռուստամի կյանքի հետագա տարիների մասին տեղեկություններ չեն պահպանվել։ Մեծ հավանականությամբ նա ունեցել է որդիներ, գուցե ոչ հայ և ոչ քրիստոնյա կնոջից կամ կանանցից։

Դառնանք այժմ Ռուստամի հորեղբայր՝ պարոնտեր Իվանե-Ստեփանոսի սերնդին։

## ՍՄԲԱՏ ՈՐԴԻ ԻՎԱՆԵ-ՍՏԵՓԱՆՈՍ ԲՈՒՐԹԵԼՅԱՆԻ

Այս Իվանե-Ստեփանոսը, տեսանք արդեն, որ մինչև Սյունյաց եպիսկոպոսանալը ամուսնացած է եղել և ունեցել Սմբատ անունով մի որդի։ Այս պարոն Սմբատը 1471 թվականին ստանում է մի ավետարան, որի հիշատակա-

---

33 Հ. Փափազյան, *Մի էջ Արևելյան Հայաստանի քաղաքական կյանքի պատմությունից* («Տեղեկագիր», 1955, № 8, էջ 86)։

34 Նույն տեղում։

*բանում տվյալներ է հաղորդում իր նախնիների մասին. «Ես՝ պարոն Սմբատս,— գրում է նա,— առի զկենսաբեր Աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ զհայրն իմ Ստեփանոս, մայրն իմ Մարգարիտ-Խաթուն, զպապն իմ Սմբատ, զմեծ պապն Իվանէի» (ժն, II, 317)։*

*Կարելի է ենթադրել, որ հենց այս Սմբատն է հիշատակված Հերհերի մոտ գտնվող ավերակ գյուղատեղում կանգնեցված մի խաչքարի արձանագրության մեջ, ուր ասված է. «Թվ. ՋԼԸ. (1489), կամաւն աստուծոյ ես Խաչատուր երէցս... կանգնեցի զխաչս հոգ(ոյ) փրկութիւն պարոն Սմբատին»։*

*Այս գրությունը խորհրդածությունների տեղիք է տալիս. նախ, ինչո՞ւ է խաչքարը կանգնեցված ոմն Խաչատուր երեցի կողմից, որը, կարծես, ազգակցական կապ չունի պարոն Սմբատի հետ, և ապա Սմբատի ի՞նչ մեղքերն ի նկատի ունի արձանագրության կազմողը՝ աղերսելով նրա հոգու փրկությունը։ Կարելի՞ է, արդյոք, հետևցնել, որ հենց այս Սմբատով է սկսվում Սյունյաց Օրբելյանների հավատափոխության պրոցեսը, և որ նա կնքեց իր մահկանացուն՝ որպես առաջինը մահմեդականություն ընդունած Բուրթելյան պայազատներից։*

*Այս հարցին անկարող ենք պատասխանել, բայց տեղեկություն ունենք «Սմբատի որդի Ռուսթցի (իմա՝ Ռոստամեցի) Սոհրաբ» անունով մի մահմեդականի մասին, որը 1508 թվականին, որպես վկա, իր ստորագրությունն է դրել Տաթևի վանքապատկան գյուղերի Շմավոն վարդապետին պատկանելու իրողությունը հավաստող մի վակֆնամեի տակ։ Գուցե այդ Սոհրաբը որդին է հենց 1489 թ. մահացած այս Սմբատի, բայց կարող է նաև լինել Ռուստամի սերնդից (թոռը՞)։ Ռուստամ ու Սոհրաբ անունները բնական են ազգակցական ավելի սերտ աղերս ունեցող անձանց համար։ Սոհրաբի ստույգ տեղը Բուրթելյանների տոհմածառում անկախ թողնելով, հայտնենք, որ նրա հեռավոր ժառանգներին՝ «Բուրթելյանների համայնք»*  *անվան տակ, բազմիցս հանդիպում ենք XVI—XVII դարերի փաստաթղթերում. այդ բուրթելյանները, ազգային իրենց դիմապատկերը կորցրած, հաճախ վեճի են բռնվել Տաթևի վանքի հետ և, միջոցների ընտրություն չկատարելով, փորձել են բռնագրավել վանական կալվածքները*[35]*։*

*Այսպիսով, XV դարի վերջերին Սյունյաց Օրբելյանների Բուրթելյան ճյուղը, որ շուրջ երկու դար հայրենի աշխարհին պարգևեց աշխարհական ու հոգևորական նշանավոր գործիչներ, օտար տիրակալների անլուր բռնություններին ենթարկվելով՝ ազգային դիմահեղձման է ենթարկվում և իջնում Հայոց պատմության բեմահարթակից։*

* * *

*Որպես աշխարհիկ ու հոգևոր տերեր XIV—XV դարերում Սյունյաց աշխարհում տիրակալած Օրբելյան իշխանների Բուրթելյան ճյուղի պայազատների մասին մեր հետազոտության արդյունքները հնարավորություն են ընձեռում կազմելու այդ գերդաստանի ըստ հնարավորի ամբողջական տոհմածառը։*

*Հարկ է նշել, սակայն որ ձեռագրական հիշատակարանների, վիմական արձանագրությունների և այլ աղբյուրների մեջ կարող են դեռևս հայտնաբերվել նոր տվյալներ, որոնց օգտագործմամբ հնարավոր կլինի լրացնել տոհմածառը աննշան դեր կատարած մի քանի նոր անուններով, ինչպես և ճշգր-*

---

[35] *Բուրթելյանների մասին այս տվյալները քաղել ենք Հ. Փափազյանի «Մատենադարանի պարսկերեն կալվածագրերը» տպագրվող աշխատությունից։*

# ԲՈՒՐԹԵԼՅԱՆՆԵՐԻ ՏՈՀՄԱԾԱՌԸ

- Բուրթել Օրբելյան (կինն է Վախախ) հիշված է 1304—1344 թթ. մհ. 1348-ից առաջ
  - Իվանե (Իւան, Իւանէ, Իւանիկ, Ինանիկ, Նանիկ)
    - Սուլթանշահ—Ստեփանոս եպս. հշվ. 1366° թ.
    - Բուրթել հշվ. 1403 թ., մհ. 1407 թ.
      - Երկու անանուն որդիք մհ. 1407 թ.
    - Սմբատ հշվ. 1386 թ., մհ. 1414° թ.
      - Իվանե-Ստեփանոս եպս. (կինն է Մարգարիտ) հշվ. 1406-ից, մհ. 1421 թ.
        - Սմբատ հշվ. 1471 թ., մհ. 1489° թ.
          - ⋮ Սոհրաբ Ուռուրցի հշվ. 1508 թ.
        - ⋮ Ստեփանոս եպս. հշվ. 1447—1464 թթ.
      - Շահ հշվ. 1415—1438 թթ.
      - Անանուն մհ. 1407 թ.
      - Բեշքեն հշվ. 1406-ից, մհ. 1438 թ.
        - Ռոստոմ հշվ. 1437—1451 թթ.
        - Վրաց թագուհի (կին Վրաց Ալեքսանդր թագավորի՝ 1412—1443 թթ.)
        - Անանուն 1438-ին՝ 10 տարեկան
    - Գորգուն հշվ. 1386 թ.
      - Տարսայիճ հշվ. 1403—1419 թթ.
        - Սմբատ
          - Եղիշե եպս. Վայոց ձորի հշվ. 1490—1495 թթ.
  - Բեշքեն (կինն է Փաշա) հշվ. 1322—1344 թթ.
    - Էլիկում (Կուկա) (կինն է Նաթել) հշվ. 1337—1349 թթ.

տումներ կատարել թվականների մեջ։ Որոտնավանքում պահպանված մի տապանաքարի արձանագրության մեջ, օրինակ, հիշատակված է ոմն «բարեպաշտ իշխան արքայազուն Սմբատ», վախճանված 1430 թվականին։ Արկզունքում 1461 թ. շարադրված մի հիշատակարանում, Պռոշյան իշխան Ջումայի հետ միասին, տեղեկություն է գրանցված նաև ոմն իշխան Ինանիկի մասին (ԺԵ, II, 157)։ Չենք տարակուսում, որ այդ Սմբատն ու Ինանիկը նույնպես Բուրթելյան գերդաստանից են սերված, բայց անհրաժեշտ տվյալներ չունենք պարզելու նրանց ծնողների անունները և տեղ տալու նրանց Բուրթելյանների տոհմածառի մեջ։ Ավելացնենք նաև, որ հետագա դարերի աղբյուրներում կան ու դեռևս կարող են գտնվել սուտ կամ շինծու տվյալներ իրենց Օրբելյան իշխանների շառավիղ համարող ընտանիքների մասին[36]։ Այդ կարգի տվյալների հավաքումն ու դասակարգումը՝ մեր նպատակից դուրս ենք համարել։

Կից էջի վրա տալիս ենք Բուրթելյանների տոհմածառը, յուրաքանչյուր անձնանվան տակ նշանակելով ծայրային այն թվականները (կամ թվականը), որ գտել ենք նրա մասին սկզբնաղբյուրներում։

* * *

Այժմ, մասնավոր քննության նյութ դարձնելով, փորձենք որոշել Սյունյաց մետրոպոլիտների հաջորդական կարգը XIV—XV դարերում՝ Բուրթելյան գերդաստանի գործունեության երկդարյա ժամանակաշրջանում։

Ղ. Ալիշանը «Սիսականի» մեջ՝ «Եպիսկոպոսունք Սիւնեաց» խորագրի տակ (էջ 20—21) տալիս է այսպիսի ցանկ.

—1310 Յովհաննէս Օրպէլ

— 1329 Ստեփանոս Օրպէլ (վրիպակ է, պետք է լինի Տարսայիճ), որդի Ջալալայ

— 1337 Սարգիս և Ներսէս

. . . . . . . . . .[37]

— 1407 Առաքել քեռորդի Գր. Տաթևացւոյ

— 1422+Ստեփանոս, որդի Սմբատայ Օրբելեան

— 1464+Ստեփանոս միւս, որդի Իւանէի Որոտնեցւոյ

— ...+Շմաւոն յաղագս տանէ

— 1483+Ստեփանոս, եղբօրորդի Շմաւոնի

— 1495+1522 Եղիշէ Օրպելեան։

Ալիշանի հաղորդած տվյալների վրա որոշ հավելումներ կատարելով մի ցանկ էլ կազմել է Արտակ եպս. Սմբատյանը, «Համառօտ պատմութիւն Տաթևի վանքի» իր ուսումնասիրության մեջ, առանց սկզբնաղբյուրների վկայության[38]։

Ավելի հանգամանորեն Սյունյաց եպիսկոպոսների հաջորդական ցանկը կազմելու աշխատանքով զբաղվել է Ներսէս եպս. Պողարյանը իր «Տաթև» ուսումնասիրության մեջ[39], յուրաքանչյուր անձնանվան դիմաց տալով նրա

---

36 Այդպիսի մի տվյալ, շարադրված կիսագրագետ մեկի կողմից XVIII դարում, հրատարակել է Ղ. Ալիշանը «Սիսականի» մեջ (էջ 97)։

37 Յոթանասունամյա այս բացատի կապակցությամբ Ալիշանը գրում է. «Ոչ յիշին և յաջորդք սոցա (իմա՝ Սարգսի և Ներսեսի—Լ. Խ.) մինչև ի սկիզբն ԺԵ դարու՝ ցամս 70» («Սիսական», էջ 21)։

38 Տե՛ս «Տաթև» տարեցույց, 1930, էջ 276—351։

39 Ն. Վ. Մովական, «Տաթև» («Սիոն» 1950, Յունիս-յուլիս, էջ 197—202)։

աթոռակալության իրեն հայտնի թվականները, նաև համառոտակի նշելով աղբյուրները (ըստ մեծի մասին Հր. Աճառյանի «Անձնանունների բառարանի» ընձեռած տվյալներով)։

Ծանոթանանք նաև այդ ցանկին (առանց նշելու աղբյուրները).

— Յովհաննէս եպս. Օրպէլ, 1310—1324
— Ստեփանոս եպս. Օրպէլ, 1329
— Շմաւոն եպս., 1332
— Սարգիս արքեպիսկոպոս, 1337
— Յովհաննէս Որոտնեցի, 1375՞—1386, որդի Իւանէ Օրբէլեանի
— Գրիգոր Տաթեւացի, 1336—1407
— Առաքել եպս. Սիւնեցի, 1407—1416՞
— Ստեփանոս եպս. 1417՞—1422, որդի Օրբէլյան Սմբատի
— Յովհաննէս փակակալ, 1422՞—1463՞
— Ստեփանոս եպս. 1464—1472, որդի Որոտնեցի Իւանէի՞
— Շմաւոն եպս. 1472՞, յաղատ տանէ
— Յովհաննէս եպս. 1478
— Ստեփանոս եպս. 1478՞—1485, եղբորորդի Շմաւոն եպս.-ի
— Եղիշէ եպս. Օրբէլեան, 1495—1522

Ալիշանի և Փաղարյանի (Ծովական) այս ցանկերը՝ վերանայման ու ճշգրտման խիստ կարիք են զգում։

Ուրիշի կամ այլ առիթի թողնելով հարցի մանրակրկիտ ու ամբողջական ուսումնասիրությունը, հիմնականում ձեռագրական հիշատակարանների մատուցած տվյալներով, փորձելու ենք ավելի ճշգրտված ցանկ կազմել XIV—XV դարերում աթոռակալած Սյունյաց եպիսկոպոսների։

**Հովհաննես-Օրբել.** նշանավոր պատմագիր՝ Ստեփանոս Օրբելյանի կենդանության օրոք (Ստեփանոսը մեռել է 1303 թվականին[40]) Սյունյաց մետրոպոլիտ է օծվել նրա հորեղբայր Լիպարիտ Օրբելյանի որդի Հովհաննես-Օրբելը։ 1302 թվականի մի պաշտոնական գրության մեջ նա իրեն կոչում է. «Տէր Յովհաննէս յազգէ Ուրպելեանց, պատուաթրանտէս Հայոց Մեծաց և մետրապաւլիտ Սիսակ[ան] նահանգի» (ԺԴ, 7)։ Վերջին անգամ հիշատակված է որոշակիորեն 1323 թվականին՝ «Տէր Յովհաննէս մականուն Ուրպէլ, մետրապաւլիտ և այցելու Սիւնեաց երկոտասան գաւառանաց» (ԺԴ, 183)։ Երբ է վախճանվել՝ չգիտենք։

**Ստեփանոս-Տարսայիճ.** որդին է Ջալալ Օրբելյանի, եղբորորդին Ստեփանոս պատմագրի։ Հոգևոր կոչում էր ընդունել 1314-ից առաջ. այդ թվականին, դեռևս «դեռաբողբոջ և լուսազարդ պատանի», նա հիշատակված է, որպես «Տէր Ստեփանոս մականուն Տարսաիճ» (ԺԴ, 99,100)՝ աթոռակալ Սյունյաց (ԺԴ, 104)։ 1321—23 թվականներին ևս, Հովհաննես-Օրբելի հետ միասին, հիշատակված է որպես «վերադիտող տանս Սիւնեաց» (ԺԴ, 166)՝ «մանուկ տիաւք առեալ զաշտիճան արհեպիսկոպոսութեան» (ԺԴ, 183)։

Հովհաննես-Օրբելի մահվանից հետո (տարեթիվը անհայտ) միայնակ է վարել Սյունյաց մետրոպոլիտությունը. 1331 թվականին հիշատակված է որպես «տէր և վերատեսուչ գահերից և գլուխ արհիերից աթոռոյս Սիւնեաց՝

40 Ալիշանը մահվան տարեթիվ է համարում 1309-ը, որ անընդունելի է։

*Տաթևոյ և Նորավանից և Ցախացքարոյ, պետ երկոտասան գաւառաց» (ԺԴ, 231)։*

**Սարգիս մետրոպոլիտ**—*Որդին է Հասան իշխանի, «որ էր յազգէ և յազնէ մեծափառ իշխանաց տանս Սիւնեաց»։ Սրա եղբայր Իվանե իշխանը կոչված է «ամիրա և պետ երկրին Որոտան» (հայրն է նշանավոր Հովհան Որոտնեցու)։*

*Սարգիսը 1326 թվականին եղել է Վաղադնի վանքի վանահայր և այնտեղ կառուցել մի պանդոկ։ 1333-ին հիշատակված է որպես «աթոռակալ» Սյունյաց (ԺԴ, 257)։ Իսկ նույն թվականի մի այլ հիշատակարանում (Նոր Ջուղա, ձեռ. № 402) կոչված է արդեն արքեպիսկոպոս Սիւնեաց («Իշխանութեան պարոն Բուրթելին... և ի յարքեպիսկոպոսութեան մերոյ տէր Սարգսի»)։*

*1337 թվականից առաջ եղել է Երուսաղեմում, ուր ստացել է մի Սաղմոսարան (Երուսաղեմ, ձեռագիր № 1033), որի հիշատակարանում ուշագրավ տվյալներ է հաղորդում իր ազգականների մասին։ Նույն 1337 թվականին ստացել է նաև Մանրուսման մի ձեռագիր, որի հիշատակարանում կոչված է «Մեծ և ամեներջանիկ մետրապօլիտն և արհիական գլուխն այսմ (Սիւնեաց) նահանգիս տէր Սարգիս»[41]։*

*Սրա աթոռակիցն է եղել ոմն տեր Ներսես. պահպանվել է Սարգսի ու Ներսեսի մանրանկար համատեղ պատկերը՝ 1337 թվականից («Սիսական», էջ 20)։ Այդ տարեթվից հետո յոթանասունամյա անջրպետ կա, որ Ղ. Ալիշանը դատարկ է թողել՝ բազմակետեր դնելով, իսկ Արտակ եպս. Սմբատյանն ու Նորայր եպս. Պողարյանը լրացրել են Հովհան Որոտնեցու, Գրիգոր Տաթևացու և Առաքել Սյունեցու անուններով։ Սակայն Սարգիս մետրապոլիտն և Հովհան Որոտնեցին շարունակական շղթա չեն կազմում, շուրջ 40-ամյա անորոշ ժամանակաշրջանով նրանք անջատված են միմյանցից Ն. Պողարյանի ցանկում։*

*Ահա այդ տարիների մի մասը պետք է տալ Ստեփանոս-Սուլթանշահ եպիսկոպոսին։*

**Ստեփանոս-Սուլթանշահ**—*Սրա ինքնագիր հիշատակարանի հետ, շարադրված շուրջ 1366 թ., ծանոթացանք Բուրթելյան պայազատների տոհմագրության բաժնում։ Վերհիշենք այստեղ, որ նա ներկայանում է որպես «տէր Ստեփանոս մականուն Սուլթանշահ»։ Այս մականունը հնարավորություն է ընձեռում նույնացնելու այս տեր Ստեփանոսին՝ «Տաղ տէր Ստեփանոսին Սիւնեաց եպիսկոպոսին» պոեմի նահատակ հերոսի հետ[42]։ Պոեմի տվյալներով Սյունյաց այս եպիսկոպոսը, մինչև հոգևոր կոչում ընդունելը, եղել է Թավրիզում՝ զինվորական ծառայության մեջ։ Ինչ-ինչ պատճառներով սպանել է իր խորթ մորը՝ Էլխութլուին, գժտվել հոր հետ։*

*Ստեփանոսի աշխարհական անունն ի հայտ է գալիս այն տողերից, որ գրել է պոեմի հեղինակը որդեկորույս մոր բերանին. սա ողբում է վաղաթառամ իր որդուն՝ կոչելով. «Որդեակ իմ, որդեակ, Սուլթանշայ» (տպագրված է*

---

41 *Dr. N. Karamianz*, Verzeichniss Armenischen Handschriften, Berlin, 1888, էջ 26.

42 Թերի պահպանված այս պոեմը Ա. Մնացականյանի աշխատասիրությամբ հրատարակվել է «Բանբեր» նախորդ համարում («Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, էջ 291—317)։ Պոեմին անդրադարձել է նաև Պ. Խաչատրյանը («Պատմա-բանասիրական հանդես», 1965 թ., № 2, էջ 197—204)։ Պոեմի հերոսին նույնացնելով Իվանե Բուրթելյանի որդի Ստեփանոս-Սուլթանշահի հետ, հնարավորություն ենք ստանում քննարկելու ուշագրավ այդ ստեղծագործության շարժառիթը հանդիսացող ողբերգական դեպքերի ժամանակի, միջավայրի ու գործող անձանց հետ առնչվող վիճելի հարցերը՝ նոր լուսաբանությամբ։

օխտը՝ «սալթան» և «շահ» ձևով, որպես առանձին բառեր): Նահատակության տարեթիվը չգիտենք, բայց պետք է եղած լինի 1466-ից հետո և 1477-ից առաջ: Մեծ հավանականությամբ նա թաղված է Վայոց ձորի Հերմոնի վանքում. այնտեղ հանգչող նշանավոր անձինք հիշատակված են 1423 թ. մի ձեռագրի մեջ՝ այսպես. «Աստ (ի վանս Հերմոնի) հանգուցեալ կան Տիրայտուր վարդապետն, Գրիգոր վարդապետն, Բարսեղ վարդապետն, տէր Սուլտանշէն...» (ԺԵ, I, 301):

Հովհան Որոտնեցի, Կախիկ մականունով—Ծնվել է 1313 թվականին, Որոտան գավառի Վաղագին գյուղում: Որդին է մեզ ծանոթ Իվանե իշխանի, որին Մեծոփեցին համարում է «ի զարմէ առաջին իշխանացն Սիւնեաց, յորմէ Վասակն էր»: 1337 թվականին Որոտնեցին նորընծա քահանա էր, որ «մեծ ջանիւ և սիրով յիմաստս բանի դեգերի՝ զպատուականսն ի սուրբ մատենաց որոճալով» (Երուսաղեմ, ձեռ. № 1033, էջ 61): Սովորել է Գլաձորի ու Հերմոնի վանքերում՝ աշակերտելով Եսայի Նչեցուն և Տիրատուր վարդապետին, եղել է Մարաղայում[43], Տփղիսում, Դարանաղյանց գավառում, Երուսաղեմում, Գողթան գավառի Սինեական անապատում, Վաղադնի վանքում, Ծարում, ի վերջո՝ Երնջակի Ապրակունյաց վանքում, ուր և մահացել ու թաղվել է 1386 թվականին: Տաթևի վանքում համալսարան է հիմնել 1373 թ., անհաշտ պայքար է ծավալել կաթոլիկ քարոզիչների ու նրանց հարած հայ ունիթոռների դեմ: 1379 թ. Ապրակունյաց վանքը մաքրել է կաթոլիկներից, դպրոց է հիմնել նաև այդտեղ, իր աշակերտ Գր. Տաթևացուն կարգելով ղեկավար: Մի-երկու տարի անց կրկին վերադարձել է Տաթև, ուր շարունակել է մանկավարժական գործունեությունը, ունկնդիր ունենալով 60 ուսանող: Ժամանակակիցներից, մասնավորապես Տաթևացու կողմից մեծարված է «մեծ վարժապետ», «տիեզերալոյս րաբունապետ», «աստուածարեալ րաբունապետ» և այլ տիտղոսներով (տե՛ս ԺԴ, 497, 498, 501, 507, 514, 556), և միայն մեկ անգամ 1386 թ.՝ «տիեզերահռչակ և երանաշնորհ րաբունապետ Հայաստանեաց և վերադիտող տէր Յովհան Որոտնեցի» (ԺԴ, 560): «Վերադիտող» բառացի նշանակում է եպիսկոպոս, ուստի վերջին կամ ինչ-որ տարիների համար միայն ստույգ պետք է համարել Հ. Աճառյանի հաղորդած տվյալը, ըստ որի «հրավիրվեց Սյունյաց առաջնորդական աթոռը, բայց նա մերժեց»[44]: Որ կյանքի վերջին տարիներին Հովհան Որոտնեցին ստանձնել էր Սյունյաց թեմի ղեկավարությունը, երևում է նրա աշակերտներից մեկի՝ Հակոբ Կրոնավորի բովանդակալից հիշատակարանից. այնտեղ ասված է, որ խուսափելով օտար զավթիչներից (որոնք ներխուժել էին Սյունիք, գրավել Որոտան բերդն ու ցանկանում էին ձերբակալել նաև Որոտնեցուն «վասն հայրենեացն ժառանգութեան»), նա փախուստ է տալիս ու ապաստանում. իսկ ապա՝ կրկին վերադառնում «ի վերայ վանորէից իւրոց, ի գաւառն Երնջակայ», և որոշ ժամանակ խաղաղ կյանք վարում. «Շինէր և հաստատէր զսուրբ

43 Հ. Որոտնեցու Մարաղա գնացած լինելու մասին վկայություն է պահպանվել Թովմա Մեծոփեցու թերի վիճակում պահպանված մի հիշատակագրության մեջ: Ինչ-որ աշխատության օրինակելու կապակցությամբ նա ասում է, որ այդ ձեռագիրը «բերաւ ի Մարաղու քաղաքէն ձեռամբ Յովանէս դրագրի՝ աշակերտի մեծին Տիրատուրայ» (Ս. Տեր-Ավետիսյան, Ձեռագիրք Նախավկայի վանաց Դարաշամբի Ս. Ստեփանոսի, որ ի Գողթն, 1904 թ., ձեռագիր № 54): Որոտնեցին Մարաղա էր գնացել, հավանաբար, այնտեղ հաստատված կաթոլիկ միսիոներ Բարթուղիմեոս Բոլոնիացու հետ ծանոթանալու և, գուցե, նրա դասախոսություններն ունկնդրելու նպատակով:

44 «Հայոց անձնանունների բառարան», Գ, էջ 628:

ննջեցին շինք և փառաւոր ի մէջ անօրէն իշխանաց և բերթաւորաց» (ԺԴ, 560)։

Այս անուղակի տվյալները հուշում են, որ Հովհան Որոտնեցին, եթե նույնիսկ չի օծվել պաշտոնապես Սյունյաց եպիսկոպոս, ապա փաստորեն իր կյանքի վերջին տարիներին վարել է այդ պաշտոնը։

Գրիգոր Տաթևացի— *Խութլուշահ մականունով։ Հայրը՝ Ամիր Սարգիս՝ Քաջբերունյաց նահանգից էր, մայրը՝ Մարիամ՝ Փարպի գյուղից։ Ծնվել է շուրջ 1344 թ. Վրաստանի Թմոգվի բերդավանում, և պատանեկությունը անցկացրել այնտեղ՝ եղբոր խնամակալության ներքո (ԺԵ, I, 103)։ 1370 կամ 1371 թվականին Հովհան Որոտնեցին, Երուսաղեմ գնալու նախօրեին, տեսնելով պատանի Խութլուշահի առաջադիմությունը «յամենայն ուսմունս», վերցնում է նրան իր մոտ աշակերտ, տանում Երուսաղեմ և, դարձի ճանապարհին, Դարանաղյաց գավառում ձեռնադրում վարդապետ (հավանաբար 1373 թվականին)։*

*Հովհան Որոտնեցու մահվանից մի քանի տարի հետո, հավանաբար 1393-ին, Ապրակունից տեղափոխվել է Տաթևի վանք ու ստանձնել Սյունյաց դպրոցի ղեկավարությունը։ Այս տարիներին է Տաթևի համալսարանն ապրել իր ամենածաղկուն շրջանը, որ տևել է շուրջ 15 տարի։ Տաթևում եղած տարիներին՝ մինչև 1408 թ., երբ նա «վասն խիր ինչ պատճառի» (ԺԵ, I, 93) ստիպված էր իր դպրոցը տեղափոխել Մեծոփա վանք, Գրիգոր Տաթևացին միաժամանակ (հավանաբար տեղապահի հանգամանքներով) ղեկավարել է Սյունյաց աթոռը։ XIV դարի վերջերին և, մանավանդ, XV դարի սկզբներին Տաթևի վանքում շարադրված մի շարք հիշատակարանների այն հատվածում, ուր ըստ սովորույթի պետք է հիշատակվեր տեղի եպիսկոպոսը, գտնում ենք միայն Գրիգոր Տաթևացու անունը, որպես «քաջ հռետոր և բանիբուն վարդապետ», «ամենիրջանիկ գիտապետ Հայոց», «[առաջնորդ] տանս Սիւնեաց» և այլն (տե՛ս ԺԵ, I, էջ 34, 60, 77)։ Շատ ավելի ուշագրավ են Հովհաննես գրչի հաղորդած տվյալները. վերջինս 1407 թվականին Տաթևում ձեռագիր էր ընդօրինակում «ի տեղապահութեան աթոռոյս... վարժապետին Գրիգորի» (ԺԵ, I, 81). նույն թվականի մեկ ուրիշ հիշատակարանում նույն գրիչը հայտնում է, որ «վարդապետն մեր Գրիգոր... հակի յաթոռ վարդապետութեան և աթոռակալութեան Սիւնեաց վիճակիս» (ԺԵ, I, 82)։*

Առաքել Սյունեցի — *Այս նույն տարիներին, Սյունիքում եպիսկոպոս էր նաև Գր. Տաթևացու քեռորդի Առաքել Սյունեցին (հայրն է Դավիթ, մայրը՝ Մելիք)։*

*Իր «Քարոզգրքի» հիշատակարանում Տաթևացին նրա մասին գրում է.*

*«Նախ քեռորդւոյն իմ ըստ մարմնի*
*Ծերնդամիտ երգարանի՝*
*Առաքելոյ առաքինի,*
*Եւ Սիւնական գլուխ արհի» (ԺԵ, I, 73)։*

*Առաքելին իրեն «Տէր Առաքել» է կոչում 1401 և 1403 թվականներին շարադրված «Ադամգրքի» հիշատակարաններում, ուստի եպիսկոպոս էր այդ թվականներից առաջ։ Վերջին անգամ նրա մասին, որպես կենդանի անձնավորության, տեղեկություն է գրանցված 1422 թվականին Անգեղակոթ գյուղում շարադրված ինքնագիր հիշատակարանում, ուր նա ներկայանում է որպես «Տէր Առաքել Սիւնեաց», (ԺԵ, I, 292)։*

*1425 թվականին արդեն մեռած էր (ԺԵ, I, 336)[45]։ Ղ. Ալիշանը Առաքելին Սյունյաց եպիսկոպոս է համարում 1407—1422 թվականների միջոցին, Ն. Պողարյանը՝ 1407—1416 թվականներն է նշում, Մ. Պոտուրյանը և նրան հետևող Ն. Տեր Ներսեսյանը՝ 1401 կամ 1403-ից են սկսում նրա եպիսկոպոսության տարիները[46]։*

*Գր. Տաթևացու և Առաքել Սյունեցու մասին ներկայացված տվյալներից կարելի է եզրակացնել, որ մինչև 1407 թվականը Սյունյաց մետրոպոլիտության ղեկը գտնվում էր Տաթևացու ձեռքում։ Նախորդ շարադրանքից գիտենք արդեն, որ Սյունյաց եպիսկոպոսները իրենց կենդանության օրոք հաճախ ունենում էին նաև փոխանորդ եպիսկոպոսներ, ուստի Առաքելը անձնիշխան Սյունյաց եպիսկոպոս կարող էր լինել միայն Գր. Տաթևացու Մեծոփա վանք մեկնելուց (1408 թ.) հետո։ Իսկ մինչև ո՞ր թվականը. այս հարցին որոշակի պատասխան տալու համար ստույգ տվյալներ չունենք. սակայն կարելի է մոտենալ ճշմարտությանը՝ ծանոթանալով հաջորդ եպիսկոպոսի՝ Ստեփանոս-Իվանեի կյանքի տարեգրությանը։*

**Ստեփանոս—Իվանե** *եպիսկոպոսը, ինչպես ասել ենք Բուրթելյան պայազատների տոհմագրությանը նվիրված էջերում, Սմբատ Բուրթելյանի որդին էր, 1406-ին՝ դեռևս աշխարհական։ 1410 թվականին, երբ Կարա-Յուսուֆը գրավեց Բուրթելյանների կալվածքները, սրա հայր Սմբատն ու եղբայր Բեշքենը գաղթեցին Վրաստան։ Իվանե-Ստեփանոսը նրանց հետ չէր։ Նա, ըստ երևույթին, մնաց Սյունիքում և հոգևոր կոչում ընդունելով՝ կոչվեց «Տէր Ստեփանոս մականուն Իւանէ»։ Որպես «հայրապետ Սյունյաց նահանգի» կամ «առաջնորդ տանս Սիսականայ» նա հիշատակված է 1419 թվականին Հերմոնի վանքում և 1421 թ. Տաթևում շարադրված հիշատակարաններում։ 1421 թվականին մեկնել էր Վրաստան իր մոր մոտ, այնտեղ էլ կնքել է իր մահկանացուն (ԺԵ, I, 258, 292)։*

*Այս Ստեփանոսից հետո Սյունյաց մետրոպոլիտական աթոռը, որ դարեր շարունակ հոգևոր իր իշխանության տակ էր պահում Սյունյաց աշխարհի 12 գավառները, փեղկվում է տարբեր մասերի։*

*Սյունիքի տարբեր գավառների՝ Վայոց ձորի, Ծղուկի, Գողթան վանական հաստատություններում շարադրված հիշատակարանները տեղեկություններ են հաղորդում հաճախ նույն տարիներին կամ տասնամյակներին եպիսկոպոս եղած անձնավորությունների մասին։ Ուստի սխալ կլիներ միահյուս շարահարությամբ կազմել Սյունյաց թեմի առաջնորդների գավազանագիրքը XV դարի 20-ական թվականներից հետո։ Նույնիսկ այն դեպքերում, երբ ժամանակակիցների կողմից այս կամ այն հոգևոր առաջնորդը, հին ավանդույթի ուժով մեծարված է «Սյունյաց եպիսկոպոս» բարձր կոչումով, վստահաբար չենք կա-*

---

45 *Առաքել Սյունեցու մասին առկա շատ սուղ կենսագրական տվյալները պետք է լրացնել 1407 թ. ուշագրավ մի հիշատակարանով, որ շարադրել է նա իր իսկ նկարազարդած ավետարանի մեջ։ Նախ պարզվում է, որ Առաքելը եղել է նաև ծաղկող և ապա հայտնի դառնում, որ նրա ավագ եղբայր Բարսեղ քահանան, 1393-ին, մեկնած է եղել Կիլիկիա՝ կաթողիկոսի մոտ (գուցե և եպիսկոպոս ձեռնադրվելու), բայց դարձի ճանապարհին սպանվել է անօրենների կողմից։ Առաքելը իր եղբոր մասունքները գտնելու համար 7 ամիս շրջել է «յերկրէ յերկիր, բազում աշխատութեամբ». ի վերջո այլոց օգնությամբ մարմինը գտել է Եղջախոռ կոչված սարում, տեղափոխել Սյունիք ու ամփոփել Վաղաղնի վանքում (ԺԵ, I, 602)։*

46 Առաքել Սիւնեցի. *Դրախտագիրք, հրատարակեց Հ. Ներսես Տեր Ներսեսյան, Վենետիկ, 1956, էջ 54։*

րող հավաստել, թե նա իրոք եղել է ողջ Սյունյաց աշխարհի հոգևոր առաջնորդը:

1424—1425 թթ. Տաթևի վանքում հիշատակվում է «մեծ քաջունապետ և տիեզերալույս վարդապետ» Մխիթարը (ԺԵ, I, 319, 338):

1428 թ. ոմն Պետրոս արքեպիսկոպոս Եղեգեցի իրեն կոչում է «վերադիտող այսմ (Եղեգեա՞ց) նահանգի» (ԺԵ, I, 382):

Բազմիցս հիշատակվում է Հերմոնի դպրոցի քաջունապետ Հովհաննես Կոլոտիկը, որը մեծ հեղինակություն ունեցող եկեղեցական էր:

1475-1484 թվականներին Վայոց ձորի Բոլորաբերդ անապատում և Սրկղունքում բանիցս հիշատակվում է մի այլ Հովհաննես արքեպիսկոպոս, որպես հոգևոր առաջնորդ «այսմ նահանգի», կամ «յայսմ գաւառի» (ԺԵ, II, 375, 400, 427, ԺԵ, III, 27, 55):

Գողթան գավառում 1477 թ. արքեպիսկոպոս է հիշվում ոմն տեր Սիմոն (ԺԵ, II, 420), իսկ 1489 թ.՝ տեր Ազարիան (ԺԵ, III, 129):

Այս ցանկը կարելի է կրկնապատկել, սակայն մեզ հետաքրքրող հարցի համար ուշագրավ են հատկապես հոգևոր այն առաջնորդները, որոնք գրավել են Սյունյաց գլխավոր եպիսկոպոսանիստ՝ Տաթևի աթոռը, և, մասնավորապես, այն գործիչները, որոնք Բուրթելյան գերդաստանի պայազատներ են:

Այս առումով ըստ ժամանակի Ստեփանոս-Իվանեից հետո ուշադրության արժանի գործիչ է Շմավոն Անգեղակոթցին (հայրն է Խաչատուր, մայրը՝ Աղուտ): Շմավոնին առաջին անգամ հանդիպում ենք 1437 թվականին Սանահնի վանքում շարադրված մեծարժեք հիշատակարանում, որը տեղեկություն է հաղորդում իշխան Բեշքենի ու նրա Ռուստամ որդու Սյունիքից արտագաղթելու և Վրաստանում հաստատվելու մասին:

Շմավոնն այստեղ կոչվում է «Երանաշնորհ և երջանիկ քաջունի՝ առաջնորդ և վերադիտող առաքելական աթոռոյն Սիւնեաց» (ԺԵ, I, 470):

Ռուստամ Բուրթելյան նշանավոր իշխանը 1451 թ. այս Շմավոնի անունով Տաթևի վանքին վաճառում է 4 գյուղեր:

1459 թ. շարադրված մի քանի հիշատակարաններում Շմավոնը իրեն կոչում է քաջունապետ և հայտնում, որ Շամախի ու Շամրան քաղաքներում ձեռք է բերել ձեռագրեր ի վայելումն իր եղբորորդի Ստեփանոս արքեպիսկոպոսի: Դրվատական խոսքեր են գրանցված Շմավոնի մասին Ստ. Օրբելյանի «Պատմության» վերջում որպես հավելված հրատարակված «Շարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց» ցանկի մեջ: Այնտեղ ասված է, որ «Տէր Սիմէոն (իմա՝ Շմաւոն) եպիսկոպոսն Անգեղակոթցի... յոյժ ջանակուռ եղև վասն շինութեան և պայծառութեան սրբոյ աթոռոյս: Եւ զի տաճիկք բռնութեամբ յափշտակեալ էին զբազում անդս և անդաստանս սրբոյ աթոռոյս, սա... վերստին սեփականեալ է սրբոյ տանս վիճեցեալսն զամենայն»: Ասված է նաև, որ այդ պատճառով մահմեդականները թշնամացել են նրա դեմ ու սպանել[47], բայց այդ մասին հավաստող ժամանակակից որևէ վկայություն չի պահպանվել:

1471 թ. Տաթևի վանքում ընդօրինակված մի ձեռագրի հիշատակարանում ասված է. «Ի յառաջնորդ[ութեան] Շմաւոն վարդապետի և Ստեփանոս արքեպիսկոպոսի», ուստի Շմավոնը 1471-ին դեռ ապրում էր, հավանաբար մահացել է մեկ-երկու տարի հետո:

47 Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1919, էջ 525:

Ստեփանոս արքեպիսկոպոս—Զմավոնի եղբորորդին է։ Առաջին անգամ հիշված է Թ. Մեծոփեցու կողմից որպես 1441 թ. էջմիածնի ժողովի մասնակիցներից մեկը. «Տէր Ստեփանոս տեղապահ Սիւնեաց աթոռոյն ի յաղատաց»[48]։

1459 թ. Զմավոնը իր եղբորորդուն կոչում է արդեն «եպիսկոպոս Եւստաթէի սուրբ առաքելոյս», կամ «Տէր Ստեփանոս արքեպիսկոպոս Սիւնեաց նահանգէ» (ԺԵ, II, 123, 124)։

1478 թվականին Աղ-Կոյունլուների նշանավոր զորահրամանատար, աթաբեկ Սուֆի-Խալիլը բանտարկեց Ստեփանոս արքեպիսկոպոսին և բռնադատեց ընդունել մահմեդականություն։ 5 տարի շարունակ, անասելի խոշտանգումների դիմանալով, տոկաց Ստեփանոսը, ի վերջո ազատվեց բանտարկությունից, վերադարձավ Տաթևի վանք, գնաց Երուսաղեմ ուխտի և վերադարձին՝ 1485 թվականին վախճանվեց[49]։

Ստեփանոսի անմիջական հաջորդը, հավանաբար, եղել է Զմավոն Բ. եպիսկոպոսը[50]։ Հիշված է 1508 թվականին։ Մի քանի տարի հետո՝ 1513 թ. Գեղարքունյաց մելիքները ստորագրեցին պարտավորագիր իրենց ենթակա գյուղերը վերստին Տաթևի վանքի հոգևոր իշխանությանը ենթակա դարձնելու մասին։ Պարտավորագրի մեջ ասված է. «Թվին ՋԿԲ. (1513) էր, մեր Գեղարքունոյ մելիք ու տանուտէրս եկայք ի սուրբ յաթոռ Ըստաթէի Սիւնեաց ԲԺ-ն դասու, եւ տեսել երկրին մեր Գեղամայ, որ ճշմարիտ երկիրն մեր Գեղարքունի թեմ և վիճակ է սուրբ առաքելոցս Ըստաթէի... Յախտ և դաշինք դրինք սուրբ առաքելոցս և առաջի եպիսկոպոսացս՝ Զմաւոն եպիսկոպոսի և տէր Ստեփանոսի և Մարտիրոս փակակալի և տէր Ղուկաս հայրապետին և այլ միաբանից՝ մեծի և փոքու...»[51]։

Այս Զմավոնի և նրան հաջորդող եպիսկոպոսների աթոռակալության ժամանակաշրջանը դուրս է մնում մեր հետաքրքրության շրջանակից։

XIV—XV դարերի Սյունյաց եպիսկոպոսների հաջորդական ժամանակագրությունը փակելուց առաջ անհրաժեշտ է անդրադառնալ նաև երկու այլ հոգևոր պետերի, որոնք սերված են Բուրթելյան տոհմից։

Ղ. Ալիշանի «Սիսականից» վերը մեջբերված «Եպիսկոպոսունք Սիւնեաց» ցանկի մեջ, 1464 թվականի տակ, կարդում ենք՝ «Ստեփանոս միւս, որդի Իւանէի Որոտնեցւոյ». նույն այս անձնավորության մասին Ալիշանը հայտնում է նաև այսպիսի մի տվյալ. «Յիշի գրեաթէ և ի կէս ԺԵ դարու (1447) Տէր Ստեփանոս եպիսկոպոս Սիւնեաց որդի Իւանէի՝ տեառն Որոտան, հարկ է ուրիշ ի նախորդէն (իմա՝ Ստեփանոս—Իւանէի, որդւոյ Սմբատայ—Լ. Խ.), զի նա մեռաւ յամի 1422 (ուղղելի է՝ 1421—Լ. Խ.), բայց այս Իւանէ որո՞յ որդի և զիարդ էր տակաւին տէր Որոտան, ոչ գիտեմ»[52]։

---

48 Թ. Մեծոփեցի, Յիշատակարան, էջ Ա։

49 Հայոց նոր վկաները, գիտական հրատարակություն, էջ 313—319։

50 Մի ավետարան վաճառելու մասին 1491 թ. շարադրված գրության տակ պահպանվել է իրեն «տէր Սարգիս եպիսկոպոս Տաթևացի» կոչող բարձրաստիճան մի եկեղեցականի ստորագրությունը (ԺԵ, III, 172), սակայն հիմք չունենք այդ Սարգսին Սյունյաց եպիսկոպոս համարելու։ Նա իրեն նույնիսկ չի կոչում Տաթևի եպիսկոպոս, այլ՝ Տաթևացի եպիսկոպոս։

51 «Բանբեր Մատենադարանի», 8, էջ 192։

52 «Սիսական», էջ 218։

Եվ իրոք, այս տեղեկությունների մեջ, որոնց սկզբնաղբյուրը հայտնի չէ, կան ստուգման ու բացատրության կարոտ տեղիներ։ Նախ, ինչո՞ւ Ալիշանը ցանկի մեջ այս Ստեփանոսին եպիսկոպոս է համարել 1464, իսկ նույն աշխատության մի այլ բաժնում՝ 1447 թվականին։ Եթե նրան հայտնի էին երկու տարբեր աղբյուրներ, ինչո՞ւ է նա զլացել ցանկի մեջ 1464-ից առաջ նշելու 1447 թվականը, և, հակառակը, 218-րդ էջի մեր կողմից մեջբերված հատվածում չի հիշեցրել, որ այդ նույն Ստեփանոսի մասին տեղեկություն ունի նաև 1464 թվականից։ Այս հարցերին պատասխանել կարելի է միայն Ալիշանի գրվածքը ուսումնասիրելուց հետո. թերևս պարզվի, որ այդ տվյալները քաղված են անստույգ աղբյուրներից (որ բացառված չէ)։ Ո՞վ էր այս Ստեփանոս եպիսկոպոսի հայր Իվանեն և ինչպես կարող էր նա XV դարի կեսերին կոչվել «տէր Որոտան», այս հարցը հուզել է Ալիշանին. պատասխանը եղել է՝ «ոչ գիտեմ»։ Կարելի է երկու ենթադրություն անել. կամ առաջադրված թվականները (1447, 1464) մեկ հարյուրամյակով պետք է ետ տարվեն ու սրբագրվեն 1347, 1364, այդ դեպքում այս Ստեփանոսը կնույնանա մեզ արդեն ծանոթ Ստեփանոս-Սութանշահ եպիսկոպոսի հետ, որ իրոք Իվանե Բուրթելյանի որդին էր։ Կամ էլ պետք է ենթադրել, որ Սմբատ Բուրթելյանի որդի Ստեփանոս-Իվանե եպիսկոպոսը, որ մինչև հոգևոր կոչումն ընդունելը ամուսնացած է եղել և հայրն է Սմբատ անունով մի իշխանի, ունեցել է նաև մի այլ որդի, որ հետագայում ընդունել է հոգևոր կոչում՝ Ստեփանոս անունով։ Եթե հաստատվի այս վարկածը, ապա պետք է կարծել, որ նրա հայր Իվանեն (հետագայում Ստեփանոս եպիսկոպոս), ինչ-որ կարճատև ժամանակ Որոտանի տեր է եղել, կամ այդպես է կոչվել ավանդությամբ (Որոտանի տէր էր, իրոք, նրա հայրը՝ Սմբատ իշխանը)։

Այսպիսով 1447 կամ 1464 թվականներին Իվանեի որդի Ստեփանոս Սյունյաց եպիսկոպոսի գոյությունը երկբայական է։

Գորգուն Բուրթելյանի որդի Տարսայիճին նվիրված հատվածում արդեն ասել ենք, որ Տարսայիճի թոռ, Սմբատի որդի Եղիշեն՝ XV դարի վերջերին, եղել է արքեպիսկոպոս։ Նրա մասին տեղեկություններ են պահպանվել 1490 թ. Վերին Նորավանքում և 1495—1496 թթ. Եղեգիսում շարադրված հիշատակարաններում. այսպես. «յարհեպիսկոպոսութեան մերոյս նահանգի տէր Եղիշէի՝ յազգէ Բուրթելանց» (ԺԵ, III, 147) և «վերադիտող այսմ նահանգի պարոնտէր Եղիշա արքեպիսկոպոսի» (ԺԵ, III, 213, նաև 229)։ Ըստ այդմ Եղիշեի հոգևոր իշխանության սահմանները սահմանափակվել են Եղեգնաձորի շրջանակներով, ուստի նրա անունը պետք է դուրս հանել Սյունյաց եպիսկոպոսների գավազանացանկից։

Վերը մեջբերված տվյալները հնարավորություն են ընձեռում կազմելու XIV—XV դարերում աթոռակալած Սյունյաց եպիսկոպոսների ճշգրտված ու ստուգված ցանկը, որ տալիս ենք ստորև, յուրաքանչյուր եպիսկոպոսի դիմաց նշելով նրա աթոռակալության ծայրային թվականները՝ եթե հայտնի են, կամ այն տարեթվերը, որ հիշատակված են նրանց կապակցությամբ ժամանակակից աղբյուրներում։

## ՑԱՆԿ ՍՅՈՒՆՅԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ

(XIV—XV դարեր)

1. Ստեփանոս Օրբելյան, *որդի Տարսայիճի—1286—1303 թթ.։*
2. Հովհաննես Օրպել, *որդի Լիպարիտ Օրբելյանի—1302—1323 թթ.։*
3. Ստեփանոս—Տարսայիճ, *որդի Ջալալ Օրբելյանի—որպես աթոռակալ Սյունյաց հիշված 1314—1323 թթ., որպես մետրապոլիտ՝ 1331 թ.։*
4. Սարգիս, *որդի Որոտան իշխան Հասանի, եղբայր Իվանեի (Սյունիքի հին իշխանական տան սերնդից)—Վաղադնի վանահայր 1326 թ., մետրապոլիտ՝ 1333՞—1337 թթ. (հիշված է վերջին անգամ)։*
5. Ստեփանոս—Սուլթանշահ, *որդի Իվանե (Նանիկ) Բուրթելյանի—հիշված շուրջ 1366 թ.։*
6. Հովհան Որոտնեցի, *որդի Իվանե Որոտնեցու, եղբորորդի Սարգիս մետրապոլիտի—մհ. 1386 թ.։*
7. Գրիգոր Տաթևացի, *որդի ամիր Սարգսի—1386՞—1408 թթ.։*
8. Առաքել Սիւնեցի, *որդի Դավթի, քեռորդի Գր. Տաթևացու—եպիսկոպոս էր 1401-ից, Սյունյաց մետրապոլիտ 1408՞՞—1410՞ թթ.։*
9. Ստեփանոս—Իվանե, *որդի Սմբատ Բուրթելյանի—1410՞—1421 թթ.։*
10. Շմավոն Անգեղակոթցի, *որդի Խաչատուրի—հիշված 1437—1471 թթ.։*
11. Ստեփանոս եպիսկոպոս, *Շմավոնի եղբորորդին, «ի յաղատաց»—հիշված 1441-ից որպես «տեղապահ Սիւնեաց», եպիսկոպոս 1471՞—1485 թթ.։*
12. Շմավոն Բ.—*հիշված 1508—1513 թթ.։*

*Սյունյաց 12 այս եպիսկոպոսներից 5-ը Օրբելյան-Բուրթելյան գերդաստանի պարոնտերեր են՝ (Ստեփանոս Օրբելյան, Հովհաննես-Օրբել, Ստեփանոս-Տարսայիճ, Ստեփանոս-Սուլթանշահ, Ստեփանոս-Իվանե)։ Ուշագրավ է, որ Հովհաննես-Օրբելից բացի, բոլորն էլ հոգևոր կոչումն ընդունելով՝ Ստեփանոս անունն են ժառանգել, բայց պահել են նաև իրենց աշխարհական անունները։ Եպիսկոպոսներից երկուսը (Սարգիս և Հովհան Որոտնեցի) սերվում են Սյունյաց հին իշխանների գերդաստանից, որոնք մինչև XIV դարի առաջին տասնամյակները դեռևս տերն էին Որոտանի։ Ըստ երևույթին ազգակցական կապերով շաղկապված մի փունջ են կազմում նաև մյուս 5 եպիսկոպոսները, սկսած Գր. Տաթևացուց, մինչև Շմավոն Բ (Առաքել Սյունեցին Տաթևացու քեռորդին է, Շմավոն Անգեղակոթցին էլ Առաքելի ազգականներից պետք է լինի)։*

Л. С. ХАЧИКЯН

## БУРТЕЛЯНОВСКАЯ ВЕТВЬ СЮНИЙСКИХ ОРБЕЛЯНОВ

(Р е з ю м е)

Автор статьи на основе имеющихся рукописных и эпиграфических данных уточняет генеалогическое древо князей Буртелянов, одного из

последних крупных феодальных родов средневековой Армении, и впервые дает полную родословную этого рода. Буртеляны, правившие Сюником в XIV—XV веках, сыграли видную роль в политической и культурной жизни Восточной Армении. Уточнение родословной этого княжеского рода важно с точки зрения исследования истории Сюника, сохранившего в условиях тюрко-монгольского владычества полунезависимое существование.

Значительное место в статье уделяется также преемству епископов-митрополитов Сюника, тесно связанных с родом Орбелянов-Буртелянов. Автор уточняет и восполняет список митрополитов, правивших Сюнийской епархией на протяжении двух веков.

L. S. KHATCHIKIAN

## LA BRANCNE DES BOURTELIAN DE LA FAMILLE DES ORBELIAN DE SIOUNIE

Matériaux manuscrits et données épigraphiques ont permis à l'auteur de l'article d'apporter des précisions à l'arbre généalogique des princes Bourtélian qui furent l'une des dernières grandes familles féodales de l'Arménie médiévale, et de présenter pour la première fois un tableau généalogique complet de cette famille. Les Bourtélian qui gouvernèrent en Siounie aux XIV^e^ et XV^e^ siècles jouèrent un rôle prédominant dans la vie politique et culturelle de l'Arménie orientale. Les précisions mentionnées sont surtout importantes du point de vue des recherches historiques concernant la Siounie qui mena, lors de la domination turco-mongole, une existence semi-indépendante.

L'auteur se consacre de même longuement aux évêques-métropolitains qui se succédèrent à la tête de l'évêché de Siounie au XIV^e^ et au XV^e^ siècles tout en entretenant d'étroits rapports avec la famille des Orbélian-Bourtélian, et dont il nous précise et complète la liste.